# „ՊԻՈՆԵՐ"-Ի ՕՐԱՑՈՒՅՑԸ

| ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 11-ՐԴ ՏԱՐԻ | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1928 թիվ | Հունվար | | | | |
| Կիրակի | 1 | 8 | 15 | 22 | 29 |
| Յերկուշաբթի | 2 | 9 | 16 | 23 | 30 |
| Յերեքշաբթի | 3 | 10 | 17 | 24 | 31 |
| Չորեքշաբթի | 4 | 11 | 18 | 25 | |
| Հինգշաբթի | 5 | 12 | 19 | 26 | |
| Ուրբաթ | 6 | 13 | 20 | 27 | |
| Շաբաթ | 7 | 14 | 21 | 28 | |

| ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 11-ՐԴ ՏԱՐԻ | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1928 թիվ | Փետրվար | | | | |
| Կիրակի | | 5 | 12 | 19 | 26 |
| Յերկուշաբթի | | 6 | 13 | 20 | 27 |
| Յերեքշաբթի | | 7 | 14 | 21 | 28 |
| Չորեքշաբթի | 1 | 8 | 15 | 22 | 29 |
| Հինգշաբթի | 2 | 9 | 16 | 23 | |
| Ուրբաթ | 3 | 10 | 17 | 24 | |
| Շաբաթ | 4 | 11 | 18 | 25 | |

1. ՆՈՐ ՏԱՐԻ
15. Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի սպանությունը 1919 թ.
21. Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀԸ 1924 թ
22. Բանվորների կոտորածը Պետերբուրգում (1905 թվի Հունվարի 9-ը հին տոմարով)
27. Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԹԱՂՈՒՄԸ

**Վլադիմիր Իլյիչ Լենինը ծնվել է 1870 թվի Ապրիլի 23-ին** (Ն. Տ.) **Սիմբիրսկ** քաղաքում. (որն այժմ, Նրա անունով, կոչվում է **Ուլյանովսկ**) և **վախճանվել 1924 թվի Հունվարի 21-ին,** Մոսկվայի մոտ, **Գորկի** գյուղում

---

**23 Կարմիր բանակի 10-րդ տարեդարձը (1918 թ.)**

---

## ՅԵՐԻՏԱՍԱՐԴ ՍԵՐՈՒՆԴԸ ՊԵՏՔ Է ԿԱՌՈՒՑԻ ԿՈՄՈՒՆ ՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳ

«Դուք պետք է կառուցեք կոմունիստական հասարակարգ. Աշխատանքի առաջին կեսը բազմակողմանիորեն կատարված եւ Հինը քանդված է, ինչպես և պետք էր քանդել. Նա ներկայացնում է իրենց փլատակների մի կույտ, ինչպես և պետք էր դարձնել փլատակների մի կույտ։

Հողը մաքրված է, և այդ հողի վրա յերիտասարդ սերունդը պետք է կառուցի կոմմունիստական հասարակարգ»։

(Լենինի ճառից՝ կոմյերիտմիության 3-րդ համագումարում 1920 թ.)

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՍՈՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1. Պիոները պահպանում է իր և ուրիշի առողջությունը, նա տոկուն է և աշխույժ. վեր է կենում առավոտը վաղ, լավ լվացվում է, կատարում մարզանք։
2. Պիոները խնայում է իր և ուրիշների ժամանակը։ Իր գործը կատարում է արագ և կանոնավոր։
3. Պիոներն աշխատասեր է և համառ. կարողանում է աշխատել կոլլեկտիվով ամեն պայմաններում։
4. Պիոները պահպանում է հասարակական գույքը, կանոնավոր է վերաբերվում դեպի գրքերը, հագուստը և պիտույքները։
5. Պիոները չի հայհոյում, չի ծխում և չի խմում։

---

ՈՒՂՂԵՑԵՔ. յերես 8, սյուն 2, վերջին տողում տպված է Ա. ՇԵԿՈՅԱՆ (հոդվածագրի ազգանունը պետք է լինի վերնագրի գլխին)։

ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում, պիոնե՛ր, պատրա՛ստ.

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏԲՅՈՒՐՈՅԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

Խմբագրության հասցեն՝ Յերեվան, Ռուբենի № 2

№ 6—7 ՆՈՅԵՄԲԵՐ—ԴԵԿՏԵՄԲԵՐ № 6—7

ԱԼԱԶԱՆ

## ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ—ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այն օրերում—կյանքը՝ ծա՛նր էր, արևը՝ ցո՛ւրտ, յեվ սո՛վ, յեվ մա՛հ,*
*Յեվ մտրակնե՛ր, յեվ աքսորում, յեվ մորթոտո՛ւմ, յեվ կախաղա՛ն.*
*Կյանքը մա՛ռ քամու բերան—վոնց վորբացած ճյուղեր աշնան։*
*Այն օրերում—կյանքը՝ ծանր էր, արևը՝ ցո՛ւրտ, յեվ սո՛վ, յեվ մա՛հ։*

—

*Յես ձեզ կասեմ իմ տեսածը, պայծառադեմ իմ ընկերներ,*
*Այն օրերից—յերբ դուրս յելանք թշնամու դեմ պատերազմի,*
*Յերբ փայլեցին թունոտ ուժով արյունագույն դրոշները մեր*
*Ու ճչացին զավթողների սուլիչները—փողեր ռազմի։*

*Մենք դուրս յելանք ամբողջ ուժով—թշնամու դեմ արյունուշտ,*
*Բանվորական մեր խմբերով վողողեցինք քաղաքները,*
*Ու վառեցինք արյունլվա յեվ սովամահ յերկրումն այն ցուրտ—*
*Ձեզ բոլորիդ կյանք պարգևող Հոկտեմբերյան կարմիր Արեվ։*

*Ու պայքարե՛ց, ու կյա՛նք տվավ, ու սա՛ռ առավ մեր բանակը,*
*Փողոցներում մենք թողեցինք դիակները ընկերների,*
*Նորից ընկանք, նորից յելանք զվարթադեմ ու անայլայլ,*
*Վոր արևը Սովետական—ձեզ խնդություն ու կյանք բերի։*

*Վոր թափ առնեն մեր աշխարհում—ջրանցքները Սովետական*
*Ու զրնգան ձեր մանկական ծիծաղի պես գարնանային,*
*Վոր հրճվեն մեր հանքերում յերկաթաթև շոգեգումթան*
*Ու արևը Հոկտեմբերյան—ձեզ պես կարմիր վարդեր անի։*

*Վոր սարերում ու ձորերում դինամիտը թափով թնդա,*
*Վոր կյանք առնեն—գործարաններ, հիդրոշեններ ու քաղաքներ,*
*Վոր մեր կյանքը, մեր աշխարհը—ձեր ծիծաղով զվարթ խնդա,*
*Վոր ընթանա սոցիալիզմի ճանապարհով յերկիրը մեր։*

*Վոր դուք ծլե՛ք ու կյա՛նք առնեք, ու բո՛յ քաշեք, ու մե՛ծանաք,*
*Վոր փողփողի ձեր ձեռներում դասակարգի դրոշը վառ,*
*Վոր ընթանաք մեր ուղիով—բանակներով մեծ ու վարար,*
*Ու վոր փթթեք, ու վոր բացվեք—դուք մեր կյանքի գարուն ու վարդ։*

—



Ճ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՏԱՍՆԱՄՅԱԿԸ ՅԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Այս տարի ամբողջ աշխարհի պրոլետարիատը տոնեց Հոկտեմբերյան հեղափոխության տասներորդ տարեդարձը։

Հոկտեմբերյան հեղափոխությունը սովորական մի հեղափոխություն չեր։ 1917 թ. հոկտեմբ. 26 ին՝ հանձինս տապալվող ժամանակավոր կառավարության՝ խորտակվեց Ռուսաստանի կապիտալիստների, կալվածատերերի և ամեն տեսակի ձրիակերների իշխանությունը, ստեղծվեց նոր Բանվորա-գյուղացիական իշխանություն, հանձինս խորհուրդների։

Յերկար ժամանակ եյին պայքարել բանվոր դասակարգը և գյուղացիությունը ցարիզմի, կալվածատերերի և կապիտալիստների դեմ։ Ռուսաստանի ամբողջ պատմությունը լիքն է բանվորների և գյուղացիների մղած պայքարի փաստերով՝ ընդդեմ ցարիզմի, կալվածատիրության ու բուրժուազիայի։

Ինչու եր պայքարում բանվոր դասակարգը ցարիզմի և կապիտալիզմի դեմ.— վորովհետև մի բուռն կապիտալիստներ իրենց ձեռքին կենտրոնացրել եյին բոլոր գործարանները, զավոդներն ու արտադրության բոլոր միջոցները (մեքենա, հում նյութ, և այլն) և շահագործում եյին բանվոր դասակարգին։ Հանքահոր՝ բում — ուր մարդ լույսի և հացի կարոտ՝ աշխատում եր առավոտվանից մինչև ուշ գիշեր իջնելով հանքահորը՝ հույս չունենալով վոր կենդանի կարող է դուրս գալ գործարաններում՝ հեղձուցիչ օդի մեջ, բանվորներն աշխատում եյին գիշեր ու ցերեկ անընդհատ, մաշվում ու հյուծվում, իսկ իրենց այդ դառն աշխատանքի համար ստանում չնչին կոպեկներ, հազիվ պահպանում իրենց գոյությունը, մինչդեռ նրանց աշխատանքի արդյունքն ուտում եյին ու տազում կապիտալիստները, վոսկեզօծ պալատներ կառուցում, ավտոմոբիլներով շքեղ զբոսնում, բիրժաներում թղթախաղի կլուբներում թղթախաղի մեջ միլիոններ տանում-տարվում ու քեֆ անում, ծիծաղում բանվորների վրա։

Հոկտեմբերը վերջ տվեց այդ բանին, նա խլեց այդ ձրիակերների ձեռքից գործարանները, զավոդներն ու հանքերը, յեվ այժմ արտադրության բոլոր միջոցները գտնվում են բանվոր դասակարգի ձեռքին։

Ահա թե ինչ նշանակություն ունի Հոկտեմբերը։

Գյուղացիության դրությունն ևս անտանելի յեր, ծանր։ Ցարի, վանքերի և մի քանի հազար կալվածատերերի ձեռքին եր գտնվում ամբողջ Ռուսաստանի հողի յերկու յերրորդից ավելին, գյուղացու ձեռքին եր գտնվում հողի չնչին մասը, բայց այն ել ամենից անբարեբեր անպտղաբեր հողամասերը։ Միլիոնավոր գյուղացիներ, գարնան ու աշնան, անձրևին, ձյունին, ամառվա կիզիչ արևի տակ, շոգին ու տապին քրտնաթոր աշխատում եյին, քարից ու հողից հաց քամում, դեզերով դեղին ցորենը կիտում, — իսկ նրանց արտադրած հացն ուտում եյին թագավորը, թագավորի թոռներն ու ծոռները, չինովնիկներն ու ժանդարմները. կալվածատերերը միլիոնավոր փթերով ծախում եյին «իրենց» հացն արտասահմանում, իսկ հաց արտադրողը, գյուղացին, մնացած վերջին փշրանքներն էլ տալիս եր ցարական հարկը, քաղցած, մերկ ու անոթի։

Հոկտեմբերյան հեղափոխությունը վոչնչացրեց խալառ հողի մշակի ուսին նստած այդ ձրիակերներին յեվ հողն ամբողջովին անցավ աշխատավոր գյուղացիների ձեռքը։

Այսօր, յերբ Հոկտեմբերյան հեղափոխության տասնմեկերորդ տարին ենք թևակոխել, մեզ համար պետք է պարզ լինի, վոր Հոկտեմբերը ԽՍՀՄ-ի և ամբողջ աշխարհի աշխատավորության տոնն է։ Ամբողջ աշխարհի աշխատավորությունն այսօր պայքարում է իր Հոկտեմբերի համար, կապիտալիստական պետությունների մեջ բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունն անդուլ ջանքերով և անթիվ զոհեր տալով շարունակում են հարթել դեպի Հոկտեմբեր ընթացող ուղին, և դեռ շատ պետք է պայքարեն, շատ զոհեր տան, մինչև տապալեն իրենց յերկրի ձրիակեր բուրժուազիային ու ստեղծեն բանվորագյուղացիական իշխանություն։

## 1920 ԹՎԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 29-Ը—ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐՆ Է

Այն ժամանակ, յերբ Ռուսաստանում բանվորներն ու գյուղացիները տապալեցին բուրժուազիային ու կալվածատերերին և ստեղծեցին իրենց բանվորագյուղացիական իշխանությունը, Հայաստանի բուրժուազիան ու կուլակությունը, հանձին դաշնակների, անցնելով իմպերիալիստական պետությունների կողմը, անջատեցին Հայաստանի աշխատավորությանը հեղափոխական Ռուսաստանից։ Դաժանությամբ ճնշելով ամեն տեսակի հեղափոխական շարժում, նրանք սկսեցին Անգլիայի, Ամերիկայի և միացած կապիտալիստական պետությունների դռները մաշել ու ժանդատ աղերսել։

Յեթե մենք ասում ենք, որ դաշնակցությունը հայ բուրժուազիայի և կուլակների կուսակցությունն է եղել, պարզ է, որ դաշնակների ղեկավարած պետությունն էլ պետք է որ հայ կուլակների ու բուրժուազիայի շահերի թարգմանը լիներ,—պետության գլուխը կանգնած դաշնակ մաուզերիստն ու վարժապետները, կուլակն ու գորբան, դուքանչին ու չարչին, մտածում էին իրենց շահերի մասին, և յերեք տարվա ընթացքում նրանց վարած քաղաքականությունը հետևյալն էր.

— Թալանի տալ թուրքի, վրացի և այլ գյուղերը, հալածել այլազգի աշխատավորությանը, ազգամիջյան կռիվներում արյունաքամ անել յերկիրը։

— Չմտածել գյուղի կուլտուրականացման մասին և քայքայել այն. գյուղի ճրագը, արորն ու չութն անգամ մոռացության էին մատնվել, գյուղը դեպի նախապատմական շրջանն էր գնում, ցանքսերի քանակը պակասում, յերկրում իշխում էր սովն ու թշվառությունը։

— Քայքայել ամբողջ արդյունաբերությունը, թալանի մատնել գործարաններն ու հանքերը, մոռացության մատնել երկաթուղին, հաղորդակցությունը։

Ահա դաշնակների 3 տարվա թագավորության ընթացքում վարած քաղաքականության հիմնականը։ Հայաստանի բանվորներն ու գյուղացիներն էլ պայքարել են հայ կուլակների և վարժապետների իշխանության դեմ. Դիլիջանում Ղազախում, Լենինականում, Լոռում մի քանի անգամ բանվորներն ու գյուղացիներն ապստամբել են, արյունալի կռիվներ են տեղի ունեցել, դաշնակները ճնշել յեն բանվորների և գյուղացիների ապստամբությունները, կոմունիստական կուսակցության լավագույն մարտիկները հոշոտվել են դաշնակցական բանտերում ու գնդակահարվել։

Սակայն 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի աշխատավորության զինված ապստամբությունը հաղթանակեց հաղթանակով, Հայաստանի Հոկտեմբերը սովի, թալանի, ավերի ու ազգամիջյան կռիվների քայքայված Հայաստանը վերածեց աշխատանքի բանվորագյուղացիական խորհուրդների իշխանության և սոցիալիստական շինարարության յերկրի։

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՅԵՎ ՆՈՅԵՄԲԵՐԻ ՅՈԹՆԵՐՈՐԴ ՏԱՐԻՆ

Մոտ օրերս տոնեցինք Հոկտեմբերի տասնամյա և նոյեմբերյան հեղափոխության 7-ամյա տարեդարձը։ Ամբողջ ԽՍՀՄ աշխատավորությունը մեծ խանդավառությամբ տոնեց Հոկտեմբերը, Հայաստանի բանվորներն ու գյուղացիները՝ Նոյեմբերյան տոնը։

Ամբողջ ԽՍՀՄ-ի և Հայաստանի աշխատավորությունը, այս 10 և 7 տարվա ընթացքում կատարել են հսկայական աշխատանքներ, այսօր ԽՍՀՄ-ի և Հայաստանի բանվորն ու գյուղացին հպարտ կերպով կարող են հայտարարել ամբողջ աշխարհում գտնված իրենց բարեկամներին ու թշնամիներին այն, որ իրենք քայքայված, քար ու քանդ եղած, պատերազմի պատճառով ավերված երկիրը վերաշինել են, և ոչ միայն վերաշինել, այլ վերակառուցում են սոցիալիստական հունով։

Մեր արդյունաբերության մի քանի ճյուղերը, ինչպես և գյուղատնտեսությունը, աճել են հսկայական չափերով.—1926 — 27 թ. մեր արտադրանքը կազմում է նախապատերազմականի 100,9 տոկոսը, գյուղատնտեսականը—108,3 տոկոսը։

Հայաստանում, ուր արդյունաբերություն բոլորովին գոյություն չուներ և շնորհիվ խորհրդային իշխանության միայն սկսեց աճել ու զարգանալ—1923-24 թ. նա տվել է մոտ 4 միլիոն ռուբլու արտադրանք, իսկ 27 թ.՝ մոտ 15 միլիոն ռուբլու։

Այս տարի հիմք դրվեց Զորագեսի հիդրոելեքտրոկայանին բացվեց Այգըր լճի վոռոգող կայանը, որը ջրելու յէ 8 հազար դեսյատին անջրդի հողեր... Ու նման նվաճումները շատ են, անհաշիվ. թե Խորհրդային Միության մեջ և թե Խորհրդային Հայաստանում։

Ահա թե ինչու այդքան մեծ նշանակություն ունեն մեզ համար Հոկտեմբերի տասնամյակը և Հայաստանի Հոկտեմբերի յոթնամյա տարեդարձը։

ԼՈՒԿԱՇԵՎԻՉ

# ՍԼԱՔԱՎԱՐԻ ՎՈՐԴԻՆ

## 1

Տասներկու տարեկան Ցաչան արագ թռչում էր Օրժավկա կայարանի ուղղությամբ: Կայարանում պիոներական հանդես կար, նա պետք է ղեկավարեր հոկտեմբերիկներին: Շուրջն ամեն ինչ այնքան ծանոթ էր: Չնայած մութն ընկել էր, բայց նա գնում էր արագ: Նա հիշողությամբ գիտեր ամեն մի թուփը, արահետը, բլրակն ու նույնիսկ քարը: Յերեք տարի այդ ճանապարհով նա գնացել էր դպրոց: Ահա շուտով վեցերորդ վերստի վրա կլինի ձորակը—և ապա կամուրջը: Դա ճանապարհի ամենավտանգավոր տեղն էր: Այստեղ բանդիտները կարող են թաքնվել և հարձակվել գնացքների վրա: Բանդիտների մասին շատ բաներ էին պատմում շրջակա բոլոր



Ցաչան շտապում էր կայարան հասնել…

գյուղերում. թե ինչպես նրանք քանդում էին ռելսերը, հարձակվում էին գնացքների վրա, կողոպտում փոստը, ճանապարհորդներին և նույնիսկ մարդ էին սպանում:

Ցաչան յերեք-չորս վերստ արդեն անցել էր, յերբ հեռվում յերևացին ծառերի ոլորվող մութ ստվերները. այնտեղ և ձորը և կամուրջը:

Ահա անտառի առաջին թփերը—սա ինչ բան է… անտառի աջ կողմում շշուկներ… խոսակցություն, շարժումներ… Չե՛, քամի չե:

Ահա նորից… նա պարզ լսում է շշուկներ… ահա փայլեց մի լույս ու հանգավ. կարծես մեկը ծխում է:

«Բանդիտներ են, բանդիտներ են»—կայծակի արագությամբ անցավ Ցաչայի մտքով… Նա կանգ առավ, քարացավ կանգնած տեղը… Նրա մարմնով սարսուռ անցավ:

Ի՞նչ անել. վազել կայարա՞ն, թե գնալ հանդիպին… Շուտով գնացքը կմոտենա—բանդիտները կհարձակվեն նրա վրա ու կթալանեն:

«Պիոները պետք է քաջ լինի»—հիշեց նա և սիրտ առնելով առաջ անցավ: Հանկարծ նրա ոտքը կպավ մի կոշտ առարկայի ու վայր ընկավ: Յերկաթգծերը քանդված էին, նա շոշափեց յերկաթգծերի վրա ընկած ծառը:

Ցաչան շուռ յեկավ ծանոթ արահետով ու սկսեց առաջ գնալ նայելով այն կողմը, վորտեղից յերբեմն-յերբեմն շշուկներ էին լսվում: Հանկարծ, ձորակի վարեջքում, կամրջի մոտ նա լսեց մի խուլ տնքոց: Թփերի տակ ընկած էր մի մարդ, վոր այնպես տարօրինակ կերպով—վոչ հառաչում էր, վոչ տնքում… Ցաչան անմիջապես ճանաչեց, ընկավ ծնկների վրա և ձեռքերով գրկեց հոր յերկար, նիհար մարմինը..

— Հայրիկ, հայրիկ…—նա նկատեց, վոր հոր բերանը լցրել են փալասի կտորներով:

— Հիմա, հիմա, հայրիկ.—Ցաչան արագ հանեց հոր բերնի չորը:

Հայրը խոր շունչ քաշեց ու հազիվ լսելի ձայնով շշնջաց.

— Սուս, կլսեն… շուտ, կայարան վազիր. այնտեղ… գնացքը ..

— Յես կարձակեմ քեզ, հետո…

— Վոչ, կայարան, կայարան, անմիջապես…

Ցաչան հանեց կոշիկները, վոր ավելի թեթև կարողանա վազել և լարելով բոլոր ուժերը՝ սլացավ դեպի կայարան:

## 2.

Կայարան հասավ այն րոպեին, յերբ գնացքը պատրաստվում էր դուրս գալու:

— Բանդիտները, բանդիտները,—ամբողջ ուժով կանչեց տղան և ուժասպառ ընկավ կառամատույցի վրա: Ճանապարհորդներն սկսեցին հավաքվել:

— Նայեցեք, նայեցեք, պիոներ է:

— Կարմիր վզկապ կա վզին:

— Տղայի ճակատն ու ոտքերն էլ արյունոտ են:

Ցաչան սթափվեց, ոտքի կանգնեց և վայրի հայացքով նայեց շուրջը:

— Այնտեղ գծերը քանդված են, բանդիտները ձորումն են… գերան են դցել.. խորտակում են.. հայրիկս կապկպված ընկած է.—և նա ցույց տվեց հեռուն:

— Ի՞նչ ես դուրս տալիս:

— Վո՞րտեղից հայտնեցիր:

— Ի՞նչ տղա յես դու.

— Ի՞նչ պատմություն է սարքել—վրա տվին բոլորը միասին:

— Պիոները յերբեք չի խաբում,—հպարտությամբ ասաց տղան,—պետք է շտապել, իմ հայրիկս կապկպված ընկած է—նա սլաքավար է:

Մոտեցան կայարանի ծառայողները: միլիցիան, բեռնակիրները:

— Սա, Ցաչան է, մեր սլաքավարի տղան,—լսվեց մի ծերունու ձայն:

— Նա ի՞նչ է. Ցաչկա, վորտեղի՞ց յեկար, ի՞նչ է պատահել:

Մոտեցավ կայարանապետը:

Ցաչան շնչակտուր, պատմեց բոլորը, ինչ վոր տեսել էր: Կայարանապետը բանի յեղելությունն իսկույն հասկացավ. նա հրամայեց կանգնեցնել գնացքը և շտապեց անհրաժեշտ կարգադրությունները անել:

3.

Մի քանի րոպեից հետո շոգեմեքենան մի ապրանքատար վագոնի հետ արագորեն հեռացավ կայարանից։



...Արագորեն հեռացավ կայարանից

Ապրանքատար վագոնում նստել էին կայարանապետը, ծառայողները, միլիցիան և կարմիր բանակայինների պահակախումբը։

Ձորակի մոտ շոգեմեքենան դանդաղեցրեց իր ընթացքը. կարմիր բանակայինները հրետանին ուղղեցին բաց դռներից դուրս և համազարկ տվին դեպի թփերը։ Հեռու անտառում իրարանցում ընկավ։ Այնտեղից էլ լըսվեցին թույլ, անկարգ հրացանաձգության ձայներ և շուտով ամեն ինչ հանդարտվեց։ Շոգեքարշի լապտերները լուսավորում էին քանդված ճանապարհն ու նրա վրա ընկած ծառերի կույտերը։

— Փախել են բոլոր բանդիտները,—ասում էին կարմիր բանակայինները։

— Նայեցեք, ինչպիսի բարիկադ են կառուցել գընացքը խորտակելու համար—կողոպտել էին ուզում սըրիկաները...

— Յաշա, Յաշինկա, ո՞ւր ես։ Բայց Յաշան չկար, նա սլանում էր այն ուղղությամբ՝ ուր ընկած էր հայրը։

— Հայրի՜կ, հայրի՜կ։

Պատասխանի փոխարեն նա լսեց հոր մեղմ, ուրախ ձայնը։

— Հասար, ապրես, Յաշա։

Շուտով յեկան կայարանապետը, ծառայողները, կարմիր բանակայիններն ու միլիցիան։

— Դե՜հ, Իվան, հպարտացիր. կեցցե քո պիոները, լավ սլաքավար կլինի,—ասում էին ընկերները, զգուշությամբ բացելով կապկպված սլաքավարին։

— Կեցցես Յաշա—դու քաջությամբ ու ազնըվորեն ծառայեցիր աշխատավոր ժողովրդին։—Կեցցե պիոները։

Յաշան ուղղվեց, համարձակորեն բարձրացրեց ձեռքըն ու պատասխանեց.—

— ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ։

Փոխ. Գ. ՋԱԼԱԼՅԱՆ

---

ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ

# ԱՐՁԱՆԻ ՄՈՏ

Հոկտեմբերի տոնին տեսա ես ձեզ,
Երկու ընկեր էիք—պատվո պահակ,
Ձեր արանքում Իլյիչը ժպտում էր մեզ,
Ու հպարտ էր թվում նա էլ ձեզ պես։

Ձեր աչքերում տեսա գալիքը մեծ,
Իլյիչի հայացքում գործը հսկա,
Երկու ընկեր էիք—պատվո պահակ,
Սիրտս զարնում որպես քայլը զգաց...

Ձեր դեմքին կարդացի խոստումը ձեր,
Իլյիչի արձանին պահակ կանգնած,
Որ վաղվա պայքարում կլինեք վեհ,
Միշտ Իլյիչի ճամփի վրա կանգնած։

Հոկտեմբերի տոնին տեսա ես ձեզ,
Ձեր հայացքը՝ բացվող նոր առավոտ,
Ձեր հայացքը պայծառ՝ գալիքը վես,
Սիրելի Իլյիչի արձանի մոտ։



ՍԿՑՈՊՍ.

# ՉՈԼԱԽ ԹԱՔՈՆ

*Վերջերս լսեցի Դիլիջանի հեղեղման մասին. լսեցի, վոր առաջին հերթին հեղեղվել է Արշակ Պապյանի հոյակապ տունը՝ գեղեցիկ պարտեզով ու չաղենիների ծառուղիներով։*

*Յեվ հիշողության մեջ խոր ակոս թողած դեպքը կրկին հիշեցի, հիշեցի Չոլախ Թաքոյին՝ կանգնած Արշակ Պապյանի տան պատի մոտ՝ ահագին քարը շալակին։*

*Դա վաղուցվա բան է, սրանից մոտ 16 տարի առաջ։ Այն ժամանակ յես 6—7 տարեկան եյի, վոտաբոբիկ, պատռտված ու կարկատած շալվարով և մի ահագին բրդե մոթալ փափախով։*

*Մեծ կամրջի ներքեվում Արշակ աղան մի ահագին կրապատ պատնեշ եր կառուցում գետի յերկայնքով, իր նոր կառուցվող ամարաթը հեղեղից պաշտպանելու համար։*

*Հայրս, ինչպես ընկերներն եյին կոչում՝ ուստա Ստեփանը, պատ շարող վարպետ եր։ Նա, իր ընկերների հետ, ամբողջ որը քափուքրտինք մտած՝ կառուցում եր Արշակ աղի ապարանքը, ուր ամառները Թիֆլիսից ու Յերեվանից դաչա եյին գալու իր ծանոթ ու բարեկամ աղաները։*

*Հարյուրավոր կռացած ձեռքեր յեվ կորացած մեջքեր պայքարում եյին քարի ու ջրի, ավազի ու կրի դեմ, գալարվում եյին մկաններ ու տնքոց հանում տանջված սրտերից, իսկ Արշակ աղան յերբեմն կառքով յերեվում եր. հրամաններ արձակում։*

*Յերբ յես ավազի վրա նստած ձեռքիս մի կտոր հացը բաժանում եյի հավերին, կողքովս իր գործին եր շտապում մի կաղ թուրք մշակ։ Նա կանգ առավ ու հարցրեց.*

*— Ո՞ւմ տղեն ես։*

*— Ուստա Ստեփանի։*

*— Բա հացը խի՞ յես փչացնում, ուտեն վեց շահի առնի, դու մարդո՞ւն անես։*

*Նա գլուխն որորելով սկսեց մի ահագին քար գլորել պատգարակի (նասիլկայի) վրա։*

*Յես հասկացա և ազդվեցի, այդ րոպեյին խորհում ու սիրում եյի թե այդ կաղ մարդուն յեվ թե հորս, վոր որական 60 կոպեկի համար գյուղից յեկել եր Արշակ աղայի ծառայելու։ Հիշում եմ, յերեկոները գյուղ գնալիս հայրս քայլում եր դանդաղ ու հոգնածությունից մեջքը կորացրած։ Նրա ուժերը քամվում եյին։*

*«Իսկ այս կաղ փոքր մարդը վո՞նց է անում», անցավ մտքովս յեվ մի անծանոթ զգացմունք սկսեց սխմել իմ պատանի սիրտը։*

*Դարաչիչակցի աժդահա մի մշակ վերցրեց նասիլկայի մի ծայրից, իսկ մյուս ծայրից, ուժերի գերագանց լարումով, վերցրեց այդ կաղ թուրքը։ Պատը՝ ուր պիտի քարը տանեյին՝ մոտ հարյուր քայլ հեռու յեր։ Դարաչիչակցին, վորն իր ահագին ուժի համար որեկան 5 կոպեկ ավել եր վարձ ստանում, քայլում եր հաստատ ու ամուր քայլերով, իսկ կաղ թուրքի վոտներն ահագին ծանրության տակ դողդողում եյին։ Նրա վզի յերակներն ուռել ու կարմրել ուզում եյին տրաքվել, իսկ մեջքը կռացել՝ կուզ եր յեկել։*

*Թուրքն ուժասպառ ճամբի կեսին քարը վայր դրեց՝ մի վայրկյան շունչ քաշելու։*

*— Տո չոլախ Թաքո*), աղությունդ քանել ա՞, — գոռաց Արշակ աղան, վոր ձեռքերը յետեվը դրած՝ հսկում եր աշխատանքին։*

*Թուրքը գործի հրավիրեց իր վերջին ուժերը, գերմարդկային ճիգ թափեց յեվ նորից վերցրեց պատգարակի ծայրը. մի քանի քայլ չարած՝ նրա կաղ վոտքը սայթաքեց յեվ Չոլախ Թաքոն փռվեց գետին։ Քարը գլորվեց նասիլկայից եվ ընկավ նրա առողջ վոտի վրա։ Այդ րոպեյին մի մտրակ շառաչեց օդում յեվ*

*) Չոլախ Թաքոն մեր գյուղացի մի կաղ կին եր, այդպես եյին կոչում թուրք մշակին։

ճըպպաց Զոլախ Թարոյի թիկունքին, իսկ մտրակի ծայրը պտտվեց նրա յերեսին։

— Անամոթ բոմոզի, — վորոտաց աղեն ու քացով մի կողմ գլորելով վիրավորին, հրամայեց քարը առնել։

Այդ ժամանակ յես ավելի մոտիկից դիտեցի Թուրքի տանջված դեմքը. նրա դեմքի մկանները ցավից կծկվում՝ կնճիռներ եյին կազմում յեվ գալարվում եր վողջ մարմինը, իսկ յերեսին մտրակը մի կապույտ ակոս եր քաշել։

Այդ դեպքը պատահեց իրիկնամուտին։

«Թարոն», մի կողմ ընկած, ցավից մռնչում եր։ Իսկ ով ել կարեկցաբար ուզում եր օգնության ձեռք մեկնել դժբախտին, Արշակ աղեն նրա վրա վորոտում եր. «Թող սատկի յը, անամոթը, վոր մարդ ըլի, աղ-պառ կըլի՞»։

*
* *

Մութը կոխելու վրա եր, յերբ լսվեց այնքան ցանկալի «շաբաշը»։ Մշակները գլխկոցով բահերն ու բրիչները թափեցին իրար վրա յեվ հերթի կանգնեցին՝ յուրաքանչյուրն իր այդ որվա աշխատավարձը՝ քանիհինգ կոպեկն ստանալու։ Արշակ աղեն «անբարեխիղճ» աշխատավորներից հինգական կոպեկ կտրեց. շատերը գլխիկոր, մռայլված ու բայլամոլոր տուն գնացին։

Վերջում Զոլախ Թարոն՝ ջարդված վոտները քարշ տալով փորսող մոտեցավ աշխատավարձն ստանալու։

— Դե գեղ*) գեղ, անամոթ բոմոզի, քեզ հախ չկա —, բղավեց Արշակ աղան, զզվանքով վոտքի ծայրով մի կողմ հրեց դժբախտ հաշմանդամին յեվ վերակացվին հրամայեց նրան վաղը գործի չընդունել։

— Աղա, յերեխեքս սովից կկոտորվին, վոտից մեռնեմ, հախս տուր, ձեռները պարզած աղաչում եր դժբախտ մշակը։

*) Կորի.



Այդ դեպքը պատահեց իրիկնամուտին

Աղեն, անտարբեր, ֆայտոն նստած սլանում եր դեպի ճաշարան։

Նրա գործը ճաջող եր գնում, յեվ պալատը կառուցվում եր չնչին ծախսերով։

Մշակները կատաղությունից ատամները կրճըտացնելով ու մռամոլոր ցրվեցին. սակայն նրանցից վոչ մեկը չհամարձակվեց բարձրաձայն բողոքել այդ անիրավության դեմ։

Այդ յերեկո յես տեսա արցունքներ Զոլախ Թարոյի դարդից ակոսված դեմքին. նա լալով պատմեց, վոր իր մյուս վոտն ել Ղազախումն է քարի տակ ընկել, Սուլեյման աղի պատը պատելիս։ Ցեվ նա խորը գիտակցությամբ ու լի դառնությամբ ասաց.

— Թուրք աղեն, հայ աղեն, մեկ են։

*
* *

Անցան տարիներ։

Հետագայում յես շատ եյի մտածում աղաների ու մշակների մասին. Զոլախ Թարոն, դեռ իմ 7-8 տարեկան ժամանակ, գիտակցության մեջ հայ ու Թուրք ամբողջ ազգն աղաների ու մշակների եր բաժանել յեվ այդ բաժանման սահմանում յես մինչեվ որս ել տեսնում եմ Զոլախ Թարոյին՝ ահագին քարի տակ ընկած, խեղճ ու հիվանդ.

*
* *

Ցեվ յերբ լսեցի, վոր Ա. աղայի տունը հեղեղը տարել է, նորից Զոլախ Թարոն՝ տանջված ու հուսահատ՝ դեմս կ նգնեց. մխացող հնամյա մի բողոք ժայթքեց հոգուս խորքից յեվ կըրքոտ կերպով ասացի.

— Հարա՞մ եր. արնաշաղա՞խ եր նրա պատերը, թո՛ղ տանի...

— Մի՞թե մենք կողմնակից ենք բայքայման, — զարմացած նկատեց ընկերս։

Ի՞նչ իմանար իմ վրդովմունքի պատճառը, ի՞նչ իմանար, վոր իմ մեջ խոսում է Զոլախ Թարոն։

# ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Յերկրագնդի բոլոր ծայրերում բանվորներն ու գյուղացիները տոնեցին Հոկտեմբերյան հեղափոխության տասնամյակը։ Չկա վոչ մի պատանի, վոր չիմանա, թե ինչպես կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, 10-տարի առաջ, աշխարհի $1/_6$-րդ մասում բանվորներն ու գյուղացիները, տապալելով ցարին, կալվածատերերին և բուրժուազիային, ստեղծեցին իրենց իշխանությունը։

Մեզ մոտ, Հայաստանում ևս, յերկար տարիներ շարունակ, բանվորներն ու գյուղացիները պայքարում եյին իրենց շահագործողների, դաշնակցականների մաուզերիստների դեմ։ Յեվ 1920 թվի նոյեմբերին Հայաստանի աշխատավորները տապալում են դաշնակցականների կառավարությունը և հաստատում խորհուրդների իշխանությունը։

Այդ յերկու հեղափոխությունները, ազատագրելով բանվորներին ու գյուղացիներին ծանր շահագործումից ու հալածանքներից, ազատագրեցին նաև նրանց յերեխաներին։ Ո՞վ չի հիշում դաշնակցականների ժամանակ մեզ մոտ տիրող քաղցն ու թալանը, տասնյակ հազարավոր վորբերի վիճակը, վորոնք զրկվել եյին իրենց ծնողներից։ Ո՞վ չի հիշում նաև սկաուտական կազմակերպությունը և նրա ղեկավարներին, վորոնք, նույնիսկ խորհրդայնացումից հետո յել, պայքարում եյին մեր կազմակերպության—պատկոմների դեմ։

Խորհրդայնացումից հետո Հայաստանում բանվոր և գյուղացի պատանեկության համար հնարավորություններ են ստեղծվում կազմակերպվելու, կազմակերպված կերպով մասնակցելու բանվոր դասակարգի պայքարին։ 1921 թ. կազմակերպվում է Հայաստանի պիոներական կազմակերպությունը։ Սկզբնական շրջանում 15-20 հոգուց բաղկացած խմբակներ կային Յերևանում և Լենինականում։ Բայց նրանք արագ կերպով սկսում են աճել և, մի քանի ամսից հետո, պիոներական շարքերում 400-500 պատանիներ են հաշվվում։ Կարճ ժամանակում կազմակերպություններ են հիմնվում նաև Հայաստանի մյուս գավառներում։ Յեվ 1922 թվին Հայաստանում մենք արդեն ունենք 2,700 պիոներներ,— 1923 թ.՝ 3,751, — 1924 թ.՝ 8 600, —1925 թ.՝ 20,000,— 1926 թ.՝ 26,000 յեվ 1227 թ.՝ 40.000։

Այդ յոթ տարիների ընթացքում պիոներական կազմակերպությունը շատ նվաճումներ է ձեռք բերել։ Վորոնք են դրանք։ Հայաստանի պիոներական շարժումը վոչ միայն հավաքել և համախմբել է իր շուրջը բանվորա-գյուղացիական պատանեկությանը, կապվել քաղաքում՝ արդյունաբերության և գյուղում՝ գյուղատնտեսության հետ, այլև նա իր աշխատանքներով ապացուցել է, վոր ինքը Լենինյան կոմյերիտմիության արժանի փոխարինողն է հանդիսանում։ Ուժեղ է յեղել կոմյերիտմիության ղեկավարությունը և բազմաթիվ պիոներներ անցել են կոմսոմոլի շարքերը։ Սակայն այդ քիչ է։ Ներկայումս յուրաքանչյուր կոլեկտիվի, ոջակի և պիոների առաջ մի շարք խնդիրներ են կանգնած։ Վորոնք են դրանք։

Ինչպես ամեն ժամանակ, նույնպես և այժմ, ավելի լայն չափերով պիտի ընդգրկել բանվորա-գյուղացիական պատանեկությանը մեր կազմակերպության մեջ։ Հարկավոր է կապվել անկազմակերպ պատանիների հետ, ոգնել նրանց դուրս գալու հին ընտանիքի ազդեցությունից, ավելի լայն չափերով մասնակից անել նրանց պիոներական բոլոր աշխատանքներին։

Միաժամանակ հարկավոր է սերտորեն կապվել աշակերտության հետ, ուժեղացնել մեր մասնակցությունը դպրոցական աշխատանքներին, ակտիվ կերպով մասնակցել ֆորպոստի աշխատանքներին և լինել առաջին աշակերտը դպրոցում։

Պիտի ոգնել չքավոր գյուղացիներին իրենց տնտեսությունը կազմակերպելու համար։ Յուրաքանչյուր պիոներ պետք է ակտիվ կերպով մասնակցի իր ծնողների տնտեսության մեջ, ոգնի իր ծնողներին և այդ աշխատանքի ընթացքում ձեռք բերի գյուղատնտեսական գիտելիքներ։ Ավելի կազմակերպված կերպով պիտի լծվել հասարակական-ոգտավետ աշխատանքներին։

Բոլոր պիոներները պիտի լավ ծանոթ լինեն ներկա քաղաքական դրությանը, պետք է իմանան ԽՍՀՄ-ի և կապիտալիստական յերկրների միջև ստեղծված փոխհարաբերությունների, պատերազմի սպառնացող վտանգի մասին։ Սրա հետ միասին պետք է ռազմականացնել պիոներական շարքերը, կապվել Կարմիր բանակի հետ, ուսումնասիրել նրանց կյանքը, ծանոթանալ ռազմական գործին, և յեթե կապիտալիստները փորձ անեն խանգարել մեր խաղաղ շինարարական աշխատանքը, մեր ծնողների և ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի հետ միասին՝ յետ մղել նրանց հարձակումը։

Ա. ՇԵԿՈՅԱՆ

Պետք է ուժեղացնել Հայաստանի պիոներների կապը խորհրդային մյուս յերկրների և արտասահմանում աշխատող և պայքարող պիոներների հետ։ Հարկավոր ու նրանց նամակներ գրել, պատմել մեր ունեցած նվաճումների և աշխատանքների մասին։ Հարկավոր է նյութական օժանդակություն ցույց տալ արտասահմանյան մեր ընկերներին, պատմել նրանց մղած պայքարի մասին անկազմակերպ պատանիներին և ծնողներին։

Նոյեմբերյան հեղափոխության 7-րդ տարեդարձին այս խնդիրները նորից դրված են պիոներական կազմակերպության առաջ։ Սրանք տևական խնդիրներ են, վորոնք պահանջում են պիոներական կոլեկտիվներից համառ աշխատանք, լինել տոկուն, ճշտապահ յեվ պարտաճանաչ։

---

# ՓՈՍՏԱՏԱՐ ԱՂԱՎՆԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*(Կարմիր բանակի կապի տեսուչ ընկ. Սենյավսկու հոդվածը)*

Իմպերիալիստական պատերազմի վերջում Անգլիան, Ֆրանսիան ու Բելգիան ունեյին 300 հազար աղավնիներ, Ամերիկայի Միացյալ Նահանգները՝ 20 հազար, Գերմանիան՝ 150 հազար։ Ներկայումս աղավնապահությունը բոլոր յերկրներում ընդունել է մեծագույն չափեր։ Այնպիսի յերկրներում, ինչպիսիք են Բելգիան, Գերմանիան և Ֆրանսիան, կազմակերպված են աղավնի սիրողների տասնյակ հազարավոր ընկերություններ, վորոնք հարյուր հազարավոր աղավնիներ են պահում։ Գերմանիայում, Բելգիայում համարյա յուրաքանչյուր գյուղ ունի փոստատար աղավնիներ սիրողների իր խմբակը։ Յապոնիան ծածկված է փոստատար աղավնիներ սիրողների ընկերությունների ցանցով, վորոնք սպասարկում են զանազան հիմնարկների։ Յապոնիայում՝ յերկրաշարժի ժամանակ՝ փոստատար աղավնիներն անգնահատելի ծառայություն մատուցեցին քաղաքների միջև կապ պահպանելու գործում։ Ներկայումս Յապոնիայում փոստատար աղավնիների թիվն անցնում է 40 հազարից։

Զնայած կապի տեխնիկական միջոցների արագ զարգացման, փոստատար աղավնին հանդիսանում է կապի էժան և անհրաժեշտ միջոց։ Աղավնու բնական հատկությունները հնարավորություն են տալիս կտրել կարճ և հեռավոր տարածություններ։ Ցեղական փոստատար աղավնին վորոշվում է սերտ կապվածությամբ իր բնին և բավականին շուտ է ծանոթանում տեղին։ Փոստատար աղավնու թռիչքի միջին արագությունը հավասար է 70 կիլոմետրի մի ժամում։ Փոստատար աղավնու մարզելը, սովորեցնելը



պահանջում է ճիշտ կազմակերպել այդ գործը։ Մի ամսվա ընթացքում կարելի չե աղավնուն այնպես մարզել, վարժեցնել, վոր մի ժամում անցնի 100 կիլոմետր. բայց այդ պետք է անել աստիճանաբար և սիստեմատիկ կերպով, ընդունելով սկզբում 15 կիլոմետր, ապա՝ 30, 45, մինչև հետզհետե հասնի 100-ի։

ԽՍՀՄ-ում աղավնի սիրողների սպորտը դանդաղորեն սկսում է վերածնվել ու զարգանալ։ Ընկած 21 թվից մեզ մոտ համեմատաբար ուժեղ են զարգանում ազնվացեղ փոստատարների տեսակները (առավելապես բելգիական ցեղից)։

Ներկայումս Պաշը-Ավիոքիմին կից գործում է փոստատար աղավնի սիրողների յենթասեկցիան, վորին հաջողվել է տեղերում կազմակերպել սիրողների բջիջներ, բացել աղավնաբուծական մի քանի կայաններ և այդպիսով զարգացնել փոստատար աղավնիներ սիրողների սպորտ կազմակերպությունը։ Վերջերս այդ յենթասեկցիան մի շարք թռիչքեր է կազմակերպել, վորի ընթացքում աղավնիները 248 կիլոմետր տարածությունն անցել են 4 ժամ 31 րոպեյում։

Փոստատար աղավնիներ սիրողների կազմակերպության գլխավոր խնդիրներն են՝ տեղերում մասսայորեն զարգացնել ազնվացեղ աղավնապահությունը և կազմակերպել նրանց թռիչքների համար մարզելու գործը։

Անհրաժեշտ է մեր քաղաքներում ու գյուղերում կազմակերպել փոստատար աղավնի սիրողների ընկերություններ և լայն մասսայականացնել այդ օգտավետ գործը։ Այս ասպարեզում պիոներական կազմակերպությունը խոշոր անելիքներ ունի։

ԳԱԳԻԿ ԴԱՎԹՅԱՆ



# ԲՈՅԻԴ ՄԵՌՆԵՄ, ԳԻՏՆԱԿԱՆ ԲԱԼԱ ՋԱՆ

1.

— Դը՛ռ՛ռ... ռ՛ռ՛, դը՛ռ՛ռ...— բերանով դռռացնում էր փոքրիկ Վիգենը, սենյակի մեջ, աթոռի վրա թառս, ձիավորի նման նստած և ձեռքին ղեկի տեղ բռնած պղնձի մի կլոր խուփ։

— Դը՛ռ՛ռ... է՛է-յ, ճանապարհ տվեք, աերոպլանս թռչում է, դը՛ռ՛ռ...

Ցեվ լուրջ ու խոժոռած հայացքով նա նայում էր առաջ պղնձի խուփ-ղեկն այս ու այն կողմ ոլորում և հազիվ գետնին հասնող ոտքերով մի կերպ առաջ շարժում աթոռը։

Սամոլոտների և օդապարիկների մասին նրան պատմել էին մանկապարտեզում, և նրա հայրը մի փոքրիկ խաղալիք-ավտոնակ էր առել ու բարակ թելով կախել առաստաղից, որն իբր թե թռչում էր...



— ...Է՛եյ, ճանապարհ տվեք...

— Դռ՛ռ՛ռ... շարունակում էր Վիգենն իր «թռիչքը», երբ ներս մտավ նրա մայրը և պատի ժամացույցին նայելով ասաց.

— Է՛է՛, Վիգեն, արդեն ժամը ինն է, իսկ դու դեռ չես թեյել և մանկապարտեզից էլ ուշացել ես, դե արի արի շուտ թեյ խմիր, մինչև չես քո նախաճաշը պատրաստեմ. որ հետդ տանես։

Վիգենը չէր ուզում բաժանվել իր «սամոլոտնակից», բայց սեղանի վրա արդեն պատրաստ էր բաժակով թեյը։

Մի քանի րոպեից հետո, նախաճաշը վերցրած, Վիգենը վազում էր մանկապարտեզ։

2.

Անցան տարիներ Վիգենը մեծացել, 14—15 տարեկան պատանի էր դարձել. աշխույժ ու ժիր պիոներ էր, և ԼԿՅԵՄ բջիջն արդեն ընդունել էր նրան կոմյերիտմիության մեջ Վիգենն ակտիվ մասնակցում էր պիոներական բոլոր աշխատանքներին բայց ամենից շատ հետաքրքրվում էր պիոներատան «Ինք պաշտպան-ավիո» խմբի բջջի մոդելիստների խմբով և նրա աշխատանքներով։

Նա այդ խմբակի ամենաակտիվ անդամներից էր։

Խմբակի վարչության վերջին վերընտրության ժամանակ նա միաձայն ընտրվեց վարչության նախագահ։

Խմբակն աշխատում էր շատ աշխույժ և ոգևորված։

Ավիոքիմի վարչությունից նրանք ստանում էին բարակ տախտակներ, բարակ ծխախոտի թուղթ, կաուչուկե լարեր, պատկերներ, դիագրամներ ավիացիայի և մասնավորապես մոդելաշինության վերաբերող գրականություն ու սխեմաներ. ստացվում էր նաև «Самолет» ժուռնալը։

Այս բոլորը պահվում էին պիոներատան, պաշտ-ավիոքիմի բջջի սենյակում, մի պահարանի մեջ, և ըստ պահանջների, Վիգենը բաժանում էր մոդելիստներին։

Ազատ ժամանակ Վիգենը շարունակ կարդում էր, կարդում էր մոդելների և աերոպլանների մասին, փայտեր տաշտաշում, թղթից զանազան ձևեր կտրտում, կպցնում իրար և զանազան փորձեր կատարում։

Խմբակի հերթական պարապմունքին անդամները հարց բարձրացրին մոդելներն ստուգելու մասին, և վորոշվեց կիրակի օրն այդ փորձը կատարել Կոմմունարների հրապարակում։

3.

Կիրակի առավոտյան, նշանակված վայրում, մոդելիստները իրենց մոդելներով հավաքվեցին։ Նրանցից յուրաքանչյուրն իր մոդելն էր տնտղում, նայում և ուղղում Այդտեղ էր նաև Վիգենը. հենց առաջին հայացքից նրա մոդելն աչքի էր ընկնում յուր գեղեցկությամբ։

— Ի՞նչ ես մտադիր դառնալ ապագայում, Վիգեն,—հարցրեց նրան Գուրգենը։

Վիգենը մի վայրկյան չիմացավ ինչ պատասխանել, անսպասելի հարցը զարմացրեց նրան.

— Յերբ դպրոցն ավարտեմ պետք է գնամ օդաչուական կուրսերը,—պատասխանեց նա։

—Այդպես... յես և Ռուբիկը վիճում եյինք. յես ասում եյի, վոր դու անպայման օդաչու պետք է դառնաս, իսկ նա ասում եր՝ ֆիզիկոս կամ քիմիկոս. վորովհետև դու այդ առարկաներից ուժեղ ես...

— Վոչ մեկդ ել չեք սխալվել — միջամտեց փոքրիկ Վիլենը, վորն աչքի յեր ընկնում յուր ընդունակությամբ և մտածված խոսքերով.—Նախ՝ դու ճիշտ ես ասում, վոր Վիգենը լյոդչիկ պետք է դառնա, իսկ յերկրորդ՝ Ռուբիկն ել չի սխալվում, վորովհետև առանց լավ ֆիզիկա իմանալու՝ ինչպես օդաչու կդառնաս և առանց քիմիա իմանալու—ինչպես կմասնակցես հետագա քիմիական պատերազմներին։

— Լավ, լավ, գիտենք, վոր շատ բան գիտես, հո բոլորը չպետք է ասես,—կատակեց սրախոս Սուրիկը։

Մինչ սրանք այստեղ ուրախ խոսում եյին, հրապարակի ծայրին յերևացին մի խումբ մարդիկ. վորոնց մեջ կային՝ պիոներատան պաշը ավխոբիմի բջջի բյուրոյից, մի խումբ մարդիկ՝ գավառային կազմակերպության ղեկավարներից. մի քանի փորձված ռուս և հայ մոդելիստներ և պիոներ բյուրոյի նախագահը։ Նրանք ունեյին ժամացույց և այլ գործիքներ՝ թռիչքների ժամանակը, հեռավորությունն ու բարձրությունը չափելու համար։

*
* *

Սկսվեց. բոլորը հերթով բաց եյին թողնում իրենց լարած մոդելները. Գուրգենի մոդելն ամենաքիչը թռավ, իսկ Վիգենի մոդելը թռավ ամենաբարձրը. բոլորը գլուխները բարձրացրած նայում եյին մոդելի թռիչքին. մի քանի րոպեյից հետո,



Նայում եյին մոդելի թռիչքին

պաշը ավխոբիմի գավառային կոմիտեյի քարտուղարը Վիգենի թևին կապեց մի գեղեցիկ ժամացույց, վորպես մրցանակ, և բացի այդ նվիրեց «մոդելիստի գրադարան»-ը։

Յերկրորդ տեղը բռնեց Վիլենի մոդելը—Վիլենն ստացավ մի քանի թանկարժեք գրքեր։

Կեցցեն Վիգենն ու Վիլենը ուռա՜, կանչում եյին շրջապատած պիոներներն ու դպրոցականները։

Յերբ Վիգենը գնաց տուն և պատմեց իրենց տանը, բոլորն ուրախացան, իսկ մայրն ուղակի չգիտեր ինչ անել.

— Բոյիդ մեռնեմ գիտնական բալա ջան,—ասում եր ու համբուրում Վիգենի լայն ճակատը։

---

# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ

**Վ. ԲԻԱՆԿԻ—«Առաջին վորսը», փոխ. Ար. Խնկոյան, Պետհրատ, 1927 թ.**

Այս գրքույկի մեջ հեղինակը նկարագրում է փոքրիկ շնիկի արկածներն անտառում։ Տալիս է հետաքրքիր բնագիտական տեղեկություններ զանազան կենդանիների և թռչունների կյանքից։ Արժեքավոր են մասնավորապես գրքում զետեղված կենդանիների նկարները։ Գինը 50 կոպեկ է, թանգ չե։

---

**ՌՈՌԻ—«Զինանեսեր», թարգմանեց Սիմակ, Պետհրատ**

Գրքույկում պատկերացվում է չինական կուլիների, ռիկշիների, նավավարների յերեխաների չարքաշ կյանքը, յերեխաների, վորոնք դեռ շատ փոքր հասակից սկսում են աշխատել և փողոցներից ծղնոտի ցեխոտ վտնամաններ և վառելիք են հավաքում։ Գրքույկը հանձնարարված է Լուսժողկոմատի Սոցդաստիարակչության կողմից։ Գրքույկը կարելի յե օգտագործել վորպես ընթերցանության նյութ՝ օղակային հավաքույթների ժամանակ։ Գինը մատչելի յե— 15 կոպեկ։

**Միքիկ**

Վ. ԻՆԲԵՐ

# ՄԵԿ ԹԵՎԸ ՔԻՉ Է

*Այդ շատ վաղուց էր։ Հին Հունաստանում ապրում էր մի տղա, Իկար անունով։ Մեկ անգամ առաջին աստիճանի դպրոցում, վորը ծովափին էր գտնվում, այնպես վոր ճայերը լուսամուտի մոտով էյին թռչում, III-րդ խմբի ուսուցիչը բացատրում էր տասնորդական կոտորակների բաժանումը։ Այդ ժամանակ նա նկատեց, վոր աշակերտ Իկարը չի լսում իրեն։*

*— Տղաներ,— ասաց ուսուցիչը,— ինչպես կարելի յե հեշտ ու պարզ կերպով տասնորդական կոտորակը բաժանել կոտորակի վրա։ Ասա, Իկար, դու ասա։*

*— Հեշտ կլինի այն ժամանակ, յերբ նրանք մոմից լինեն,— պատասխանեց Իկարը,— անթարթ նայելով լուսամուտից դուրս՝ ծովային թռչուններին։*

*Այդպիսի պատասխանից ամբողջ խումբը քարացավ, ուսուցիչը թափահարեց գլուխը և աշակերտների ցուցակի մեջ, Իկարի անվան դիմաց, մի նշան արեց, վորը նշանակում էր՝ «տանել բժշկի մոտ»։*

*Բայց Իկարը վոչ խելքն էր կորցրել, վոչ էլ հիվանդ էր։ Միայն որ ու գիշեր մտածում էր մի բանի մասին. ինչպե՞ս անել, վոր կարելի լինի թռչունի պես թռչել։ Բարձրանալ հայրենի քաղաքի կամ դպրոցի վրա, հասարակ ու տասնորդական կոտորակների վրա և թռչել ծովի վրայով բարձր և բարձր, սուզվելով թափանցիկ ոդի մեջ։*

*Նա այնքան շատ և համառ կերպով մտածում էր դրա մասին, վոր մի քանի տարուց հետո, վերջացնելով արդեն դպրոցը, պատրաստեց մոմից արծվի թևերի նման մեծ թևեր... Յեվ մի շոգ ու պայծառ որ բարձրացավ աշտարակի վրա, ամրացրեց ուսերին թևերը և յետ մղելով վոտները նետեց իրեն առաջ. քամին գրկեց նրան ու տարավ, ինչպես ծովային թռչունին, ավելի և ավելի բարձր, ուղիղ դեպի արևը։*

*Վորովհետև որը շոգ էր և արևը շատ ուժեղ կերպով էր տաքացնում, Իկարի մոմե թևերը սկսեցին հալչել։ Յեվ այն ժամանակ, յերբ նրա թևերը բոլորովին հալվեցին, Իկարն ընկավ գետին, դպրոցից վոչ հեռու։ Ընկավ և մահացու ջարդվածքներ ստացավ։*

*Պետք է ասել, վոր այդ պատմությունը հավաստի չէ։ Յեվ այդ այնքան վաղուց է կատարվել, վոր շատ դժվար է պարզել, թե արդյոք այդ ինչպես յեղել է, թե վոչ։ Բայց և այնպես Իկարի մասին յեղած ավանդությունը չի մեռնում և սպորտային այն խաղերը, վորոնք ի պատիվ նրան «Իկարյական» են կոչվում, հասել են մինչև մեր որերը։*

*Բայց յեթե Իկարի պատմությունը մտածածին է, ապա մտածածին չէ այն, վոր մարդկությունն արդեն, դեռ անհիշելի ժամանակներից, յերազել է թռիչքի մասին։ Մինչև այդ յերազի իրականություն դառնալը անցել են շատ և շատ դարեր։ Մոմե թևերի ժամանակներից հետո, մարդկությունը շատ է հասունացել ու խելահաս դարձել։ Նա արդեն գիտե, վոր մոմն այդ նպատակի համար անպետք է, վոր կա ալյումինիում մի նյութ, վոր մոմի պես թեթև է, պողպատի պես՝ ամուր։ Մարդկությունը գիտե նույնպես, վոր առանց կոտորակների ինքնաթիռ չի կարելի կառուցել։ Վոր մաթեմատիկան անհրաժեշտ է թևերի ճիշտ նախագիծը կազմելու համար։*

*Հիմա յուրաքանչյուր յերկրում կառուցվում են տասնյակ հազարավոր ոդանավեր։ Շուտով այնպիսի ժամանակ կլինի, յերբ դպրոցական եքսկուրսիաները քաղաքից դուրս կտարվեն ոդանավերով։*

*Ոդանավից յերկիրը կարելի յե տեսնել ավելի մեծ և լավ, քան լինելով նրա վրա։ Յեթե նայես վերևից՝ գետերը կերևան վորպես ոձապտույտ յելած կանաչ և կապույտ ժապավեններ, ցորենի արտերը կանաչին կտան և մարգագետինների հոտերը՝ վոչխարներն ու կովերը՝ մի բուռն ընկույզներ կթվան։*

*Մեզ համար ամեն բան շատ պարզ է և հասարակ։ Մենք կարող ենք առանց վախենալու թռչել ալյումինե թևերով, վորովհետև մենք սովորել ենք նրանց կառուցել։*

Վերջերս պիոներներն սկսեցին փող հավաքել իրենց օդանավի համար։ Նրանք արդեն մեկ թևի փողը հավաքել են։ Բայց այդ քիչ է։ Թռիչք կատարելու համար հարկավոր է յերկու թև։ Հարկավոր է մոտոր, պոչ և պրոպելլեր նույնիսկ ամենաընդունակ թռչունը, ամենից արագ թռչող թռչունն ունի յերկուական թևեր։

Պիոներները պիտի ունենան իրենց օդանավը, վորպեսզի կարողանան օգնել իրենց յերկրին։ Նրանք անպայման պետք է փող հավաքեն յերկրորդ թևի, մոտորի պրոպելլերի և պոչի համար։

Յեթե այդ նրանք չեն անի, այն ժամանակ ամոթ իրենց, վորովհետև Իկարը, հույն տղան իր կյանքը վճարեց թռիչքի համար, իսկ պիոներները շատ և շատ քիչ են վճարելու։

---

Վ. ԶՈՐԻՆ

# ԱՐՏԱԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՄԲԱԿՆԵՐԸ ՅԵՎ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

— Եվ ինչ խմբակ ասես, վոր չկա դպրոցում. եվ բնասերների, ավիացիայի, ռադիոյի, գրական, մաթեմաթիկական։ Մյուս կողմից եվ պիոներական ֆորպոստն ու կոմսոմոլը բջիջն են իրենց աշխատանքն առաջ տանում։ Վորտեղ աշխատես, ուր գնաս.- հաճախ այսպիսի խոսքեր ես լսում դպրոցում ընկերներից։

Այդ բոլոր խմբակների ու կազմակերպությունների աշխատանքի մեջ դեռ բավականաչափ անկանոնություն կա։ Մեզնից քիչերը գիտեն թե ինչպես պիտի կազմակերպել այդ խմբակների աշխատանքը, ինչպես պիտի աշխատեն պիոներական և կոմսոմոլի կազմակերպությունները, վորպեսզի այդ գործի մեջ չլինեն բոլորի պոչում, և վերջապես, այդ բոլոր կազմակերպությունների մեջ յեղած տարբերությունը։

Մի բան պարզ է. խմբակներն աճում են ինչպես սունկեր, բոլորի ցանկությունն է աշխատել այդ խմբակներում, հարկավոր է օգնել նրանց կազմակերպվելու և աշխատանքը ճիշտ հունով առաջ տանելու համար։

## ԶԱՆԱԶԱՆ ՏԵՍԱԿԻ ԽՄԲԱԿՆԵՐ ԿԱՆ

Այդ բոլոր խմբակները յերեք հիմնական մասի յեն բաժանվում. առաջինը՝ դա գիտական-տեխնիկական խմբակներն են (ավիացիոյի, ռադիոյի, բնասերների և այլն), յերկրորդը՝ հասարակական (Մոպր-ի, «Մանուկների բարեկամներ»-ի, «Կորչի անգրագիտություն» և այլն) և յերրորդը՝ գեղարվեստագիտական (դրամատիկ, գրական, յերաժշտական և այլն)։

Ինչու յեն նրանք այդպես արագ զարգանում ներկայումս։

Վորովհետև մեր յերկրի տնտեսական և կուլտուրական վերելքըն այնպիսի մարդկանց պահանջ է դնում, վորոնք տեղեկություններ պետք է ունենան ավիացիայից, ռադիոյից, ելեկտրոֆիկացիայից, վորոնք ծանոթ լինեն մեր հանրապետությունների բնական հարստություններին, վորոնք կարողանան հասարակականորեն կազմակերպվել՝ յերկրի համար վոր են օգտակար գործ կատարելու նպատակով։

Կարելի՞ յե արդյոք հավասարություն գիծ տանել այդ խմբակների և պիոներական կազմակերպության կամ կոմսոմոլի միջև

Ի հարկե չի կարելի։ Յեվ պիոներները, և կոմյերիտականները համախմբվում են հատուկ հասարակական-քաղաքական կազմակերպությունների մեջ, վորոնց անմիջապես ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը։

Նրանց նպատակն է՝ կոմմունիստորեն դաստիարակել աշխատավորության աճող սերունդը, պատրաստել նրանից հեղափոխական մարտիկներ և կառուցողներ։ Պիոներական շարժման խնդիրների մեջ մտնում է և հասարակական, և կուլտուրական, և տեխնիքական պատրաստականությունը, վորը կարող են տալ զանազան խմբակներ և դպրոցներ։

Պիոներական շարժումը չի կարելի հավասարեցնել այս կամ այն գիտելիքները, ունակությունները ավող խմբակների հետ։ Պիոներները և կոմյերիտականները մի ընդհանուր հեղափոխական նպատակ ունեն—բանվոր դասակարգի վերջնական հաղթանակը, կոմունիզմի հաստատումը։

Այն պատանիները և յերիտասարդները, վորոնք այդ խմբակներում աշխատում են, կարող են և չտեսնել այդ վերջնական նպատակը, կարող են չիմանալ, թե ինչ ճանապարհով կա, ելի յե նրան հասնել։

Սակայն աշխատելով այդ բոլոր խմբակներում, նրանք կարող են այնուամենայնիվ օգուտ բերել թե իրենց և թե մեր տնտեսությանը, մեր սոցիալիստական շինարարությանը։

Յուրաքանչյուր խմբակային պետք է իրեն հարց տա. ինչ ո-

գում ենք տալիս տեղական տնտեսության, աշխատավորության, հասարակական կազմակերպություններին՝ մեր խմբակի աշխատանքով։

Յեթե մենք միջատներ, կենդանիներ վորսում ենք միայն վորսալու նպատակով, այդ անօգուտ է։ Մենք դրանով կտրում ենք մեզ բանվոր դասակարգի և աշխատավորության մեծ շինարարություններից։

Մենք պետք է վորսանք, ուսումնասիրենք միջատներին, կենդանիներին նրա համար, վորպեսզի իմանանք, թե վորոնք են նրանցից վնասակար, վորոնք են նրանցից օգտակար մեր տնտեսության համար։ Պետք է ուսումնասիրենք՝ թե վոնց պայքարել վնասակարների դեմ և ինչպես զարգացնել օգտակարները։

Յուրաքանչյուր խմբակային պիտի սովորի թե ինչպես է աշխատում իր խմբակը, ինչքան օգուտ է տալիս։ Յեթե քիչ օգուտ է բերում՝ հարկավոր է պարզել դրա պատճառները, հրավիրել այնպիսի մասսայական կազմակերպությունների ուշադրությունը, ինչպիսին պիոներներն են և կոմսոմոլը, և ընդհանուր ուժերով գործն առաջ տանել։

## ՀԱՐԿԱՎՈՐ Է ՀԱՄԵՐԱՇԽ ԱՇԽԱՏԱՆՔ

Իսկ վորո՞նք են պիոներների և կոմյերիտականների անելիքները։

Իհարկե, մտնել այդ խմբակների մեջ, գրավել նրանց հասարակական աշխատանքի, ճիշտ ճանապարհի վրա դնել նրանց աշխատանքը։

Սակայն այդ բոլորը չէ, այն գիտելիքները և ունակությունները, վոր ձեռք կբերի պիոներն այս կամ այն խմբակում, նա պետք է տեղափոխի իր կոլլեկտիվը՝ հետաքրքրություն առաջացնելով դեպի այն իր ընկերների շրջանում։ Յուրաքանչյուր պիոներ, աշխատելով վորևէ խմբակում, պետք է միշտ իր կոլլեկտիվի համագործակցությունն առաջարկի խմբակի այս կամ այն աշխատանքները կազմակերպելու համար։

Որինակ, բնասերների խմբակըն անցկացնում է քաղաքի կամ գյուղի բուսականության ուսումնասիրությունը. պիոներական կոլլեկտիվը նույնպես պիտի մասնակցի այդ հետաքրքիր և օգտակար աշխատանքին։ Յեվ այդպես, միշտ պիտի հիշել, վոր վոչ թե մրցություն է հարկավոր (թե ով շատ, ով լավ), այլ համերաշխ, ընկերաբար աշխատել է հարկավոր ընդհանուրի շահերի համար։

# ՄԵՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻՑ ՄԵԿԸ



ԲԱԳՎԻ ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՅԵՐԿԱԹՈՒՂԻՆ



# ԻՆՉՊԵՍ ՄԱՍՆԱԿՑԵՑԻՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ԲԵՐՔԻ ՏՈՆԻՆ

## ԱՅՍ ՏԱՐԻ ԱՎԵԼԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ

Անցյալներում պիոներները կազմակերպված կերպով հանդես չեյին գալիս Բերքի տոնին։ Ճիշտ է, յեղել են դեպքերը, յերբ պիոներները գյուղատնտեսական ցուցահանդեսներում ցուցադրել են իրենց մշակած բույսերի տեսակները խնամած անասունները և թռչունները, սակայն դրանք մասսայական բնույթ չեն կրել և անհատական, առանձին պիոներների մշակած արդյունքներ են յեղել։

Այս տարի պատկերը բոլորովին փոխվել է։ Վերջին տարվա ընթացքում պիոներական կազմակերպությունը հատուկ ուշադրություն դարձրեց պիոներների գյուղատնտեսական աշխատանքների վրա։ Գյուղական կոլլեկտիվներին տրվեց առաջադրություններ բանջարաբուծության, անասնապահության և թռչնապահության վերաբերյալ։ Այդ առաջադրությունները տվեցին իրենց արդյունքները։ Յեվ այս տարվա Բերքի տոնը ցույց տվեց, վոր արդեն վոչ միայն անհատ պիոներներն են գյուղատնտեսական աշխատանքով զբաղվում, այլև նրանք այդ աշխատանքին մասնակցում են կոլեկտիվ կերպով՝ իրենց ողակներով ու կոլլեկտիվներով։



Քյավթառլի գյուղի 1 աստ. դպ. պիոներները կոմյերիտական ուսուցչուհու հետ միասին, ցուցադրել են իրենց խնամած հավերը։

## 8 ՖՆՏԱՆՈՑ ՃԱԿՆԴԵՂ

Որինակ, Լենինականի գավառի Քյավթարլիի շրջանային գյուղատնտեսական ցուցահանդեսում, Մահրթլի գյուղի պիոներական կոլլեկտիվը ցուցադրել եր 2 հատ 8 Ֆնտանոց ճակնդեղ։ Ճակնդեղը մշակել եյին 8 պիոներներ-12 տարեկան պիոներ Սանասար Մուքելյանի ղեկավարությամբ՝ հենց նրա ծնողների հողամասում։

Պիոներ Սանասար Մուքելյանն իր ճակնդեղով։

Սանասարին հարցնում եմ.

— Վո՞րտեղ եք մշակել ճակնդեղը։

— Ապուս բոստանի կողքին։

— Ո՞ւմ հողի վրա։

— Ասացի ելի, ապուս։

— Սերմը վո՞րտեղից եք վերցրել։

— Ի՞նչ սերմ, ապիս մեզ 200 հատ շիթիլ տվեց և դրանք ել տնկեցինք։

— Ի՞նչպես եյիք քաղհանում։

— Ապուս նման։

— Իսկ յե՞րբ եյիք ջրում։

— Յերբ ապիս եր ջրում։ Բայց մենք ավելի խոշոր արմատներ ստացանք, քան ապիս, վորովհետև մենք ավելի շուտ-շուտ եյինք քաղհանում և փխրացնում հողը, ղեկավարվելով ագրոնոմի տված խորհուրդներով։

---

Ցուցահանդեսի թռչնաբուծական մասում I աստիճ. դպրոցի պիոներներն իրենց խնամած թռչուններն են ցուցադրել։

---

Մի կողմում պիոներները հավաքվել և լսում են ագրոնոմի բացատրությունները գյուղատնտեսական մեքենաների մասին։

## ՄԵԿ ՇԻՇ ՑՈՐԵՆԻՑ 3 ՓՈՒԹ ՑՈՐԵՆ

Լենինականի III շրջանի պիոներական կոլլեկտիվներից մեկն անցյալ տարի արտերից հավաքում է մեկ շիշ ցորեն։ Այդ ցորենն այս տարի ցանում է և ստանում 3 փութ ցորեն։



Ղամարլվի գյուղատնտեսական դպրոցի աշակերտները։ Աջ կողմից՝ ծխախոտը դամաթ են անում, ձախ կողմից՝ իրենց ցանած սորգոն են ցուցադրել։

## ՄԵԿ ԴԵՍՅԱՏԻՆԻՑ 120 ՓՈՒԹ ԲԱՄԲԱԿ

Ղամարլվի գյուղատնտեսական դպրոցի աշակերտները, որոնց մեծ մասը պիոներներ ու կոմսոմոլականներ են, ցուցադրել էին իրենց մշակած կանեփը, բամբակը (120 փութ մեկ դեսյատինից), ծխախոտը և անասուններին կերակրելու համար ցանած բույսը։ Նրանք արժանացել են 25 ռուբլի պրեմիայի։

## ՏՐԱԿՏՈՐՆԵՐՆ ՈՒ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Նորագավիթում պիոներներին ամենից շատ տրակտորներն էին հետաքրքրում։ Երբ տրակտորները գնում էին, պիոներներն այնպես էին ոգեվորվում, կարծես երաժշտություն նվագելիս լինեն։

Վերջանում է Նորագավիթի ցուցահանդեսը, պիոներները շարք շարք ցրվում են իրենց գյուղերը․

—Մեկ, երկու, մեկ...
— Ձախ, աջ, ձախ ..

Երգում են.

Մեր ղեկավարն է կոմսոմոլը,
նա է մեր ավագ եղբայրը,
կոմունիստական ոգով, հեյ,
մենք կրթվենք, հեյ՜, հեյ՜ հեյ՜։

Ալիս

## ԿՈԼԼԵԿՏԻՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵՐ ԱՌԱՋԻՆ ՓՈՐՁԸ

(Դուրգուլուի պիոներական կոլլեկտիվի նամակը պիոներների կենտրոնական բյուրոյին)

Մեր կոլլեկտիվն այս տարի գյուղատնտեսության ասպարեզում կատարել է օրինակելի քայլ և արժանացել է մրցանակի։ Մենք, մեր ուժերով դպրոցի մեկ քառորդ դեսյատին հողամասում շարքացան բամբակ ենք ցանել։ Ցանքսը մեր ուժերով քաղհանել ենք, սրսկել և պաշտպանել։ Մի խմբով կատարել ենք բոլոր աշխատանքները բացի վարելուց։

Այս կոլլեկտիվ աշխատանքը մեր առաջին փորձն է։ Մենք ծանոթացանք բամբակի մշակության ձևերի հետ և դրանով ապացուցեցինք, որ մենք էլ մասնակցում ենք մեր փոքրիկ ձեռներով գյուղատնտեսության մեքենայացման, զարգացման գործին։ Մենք բամբակի բերքից բավական արդյունք ստացանք, որը կբավարարի մեր կոլլեկտիվի կարիքները։

Բոլորս ուրախ ենք և մեծ ոգևորությամբ կշարունակենք այս աշխատանքները և հուսով ենք, որ պիոներների Կենտրոնական Բյուրոն մեզ կօգնի և ցուցմունքներ կտա։

«26»—ի անվան պիոներական
կոլլեկտիվ

Դուրգուլուի

# ԽԱՆԳԱՐՎԱԾ ՀԱՎԱՔՈՒՅԹԸ

*(Վիեննայի պիոներական կոլեկտիվներից մեկում)*

— Ընկերներ, լսե՛ք ինձ։ Դարձյալ մեզ դատի յեն յենթարկում։ Մեր ղեկավարներ՝ Գյանցը, Բեյզինգերը յեվ Վիրտհեյմը պետք ե դատվեն պիոներների մեջ աշխատանք տանելու համար։ «Կարմիր բազեներին» յեվ սկաուտներին հովանավորում են, իսկ մեզ հետապնդում, — տաքացած ասաց 13 տարեկան մի տղա՝ ներս վազելով սենյակ։

Սենյակում նստած Վիեննայի պիոներական խմբերից մեկի պիոներները շրջապատեցին նրան։

— Յեվ դեռ բոլորը չե, — շարունակեց նա։ — Լուսավորության մինիստրն առաջարկել ե քաղաքային դպրոցական խորհրդին պայքարել դպրոցներում պիոներների դեմ յեվ արգելել աշակերտներին անցնել մեր շարքերը։

— Դրանում, ընկերներ, զարմանալու վոչինչ չկա, մեր կազմակերպության ամբողջ պատմությունը կազմված ե հետապնդումներից ու արգելքներից, — պատասխանեց նրան կոմյերիտական ղեկավարը, — Դուք գիտեք, վոր վոստիկանությունն արգելում ե մեր տոնախմբությունները, ցրում ցույցերը, իսկ վերջերս թույլ չի տալիս մեր կենտրոնական բյուրոյին աշխատել, պատճառաբանելով, վոր «պիոներների աշխատանքը» վատ ե անդրադառնում աշակերտների առողջության վրա։ Յես կրկնում եմ, դրանում վոչինչ չկա զարմանալու։ Մենք միշտ կօգնենք կոմունիստներին պայքարելու կապիտալիստների յեվ նրանց իշխանության դեմ, իսկ վոստիկանությունը դրա համար մեզ կը հալածի։ Մենք «կարմիր բազեներ» չենք, վոր զբաղվենք հեքաթներով ու զբոսանքներով։ Մենք՝ մարտական հեղափոխական կազմակերպություն ենք։

—Իսկ հիմա, ընկերներ, զբաղեցրեք ձեր տեղերը, Ֆորարլբերգի շրջանից յեկած ընկերը ձեզ բան ունի պատմելու։



Մեզ մոտ, ընկերներ, պիոներներ չկան, — ասաց Ֆորարլբերգից յեկած ընկերը, իսկ նրանց կազմակերպել անհրաժեշտ ե։ Դուք յերևի լսել եք, վոր մեր շրջանում շատ տեքստիլ գործարաններ կան։ Այդ գործարաններում հասակավորների հետ միասին հարյուրավոր յերեխաներ են աշխատում։ Հասակավորները մեզ մոտ 14 ժամ են աշխատում, իսկ փոքրերը՝ 10—12 ժամ յեվ մեծերից 4 անգամ պակաս աշխատավարձ են ստանում։ Ա՛յ, յես ձեր հասակին մի տղա ունեմ. նա տարի ու կես ե, ինչ աշխատում ե։

Հիմա յես ձեզ կպատմեմ մի դեպքի մասին, վոր կատարվել ե դպրոցներից մեկում. նա գտնվում եր մեր տնից վոչ այնքան հեռու։ Այդ դպրոցում տերտերն այնքան եր ծեծել աշակերտին, վոր նա կորցրեց իր գիտակցությունը։

Աշակերտի ծնողները դիմեցին բժշկին յեվ նա ասել եր նրանց, վոր աշակերտի ստացած հարվածները կարող են ծանր հետևանքներ ունենալ։ Իսկ երբ ծնողները գնացին տերտերի մոտ, նա նրանց ասաց, վոր ինքը կաղոթի սատանի յերեխայի առողջության համար։ Բացի դրանից նա կարգադրեց ամբողջ դասարանին ամեն որ հիշել տղայի անունը առավոտյան աղոթքի ժամանակ։

— Մենք շատ հուզվեցինք, մենք խորհուրդ տվինք ծնողներին՝ տերտերին դատի տալ։ Բայց դրանից հազիվ թե մի բան դուրս գա, քանի վոր բոլոր դատավորները կապիտալիստների բարեկամներն ու ծանոթներն են։ Մեր միակ հույսը կոմունիստական հեղափոխությունն ե, վորի համար մենք պիտի աշխատենք։

Հետո բոլորը գնացին պարտեզ, ուզեցին մի խաղ խաղալ, յերբ վոստիկանը բղավեց.

— Դե՛, կորեք ստեղից, շո՛ւտ...

Պիոներներն ստիպված յեղան տուն գնալ։

---

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՆՎԵՐԸ ԽՍՀՄ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

Հոկտեմբերի 10-ամյակի առթիվ Լայպցիգ քաղաքի պատանի սպարտակները Կիևի գերմանական դպրոցի պիոներներին ուղարկել են մի դրոշակ յեվ հետևյալ նամակը.

**«Մենք ուղարկում ենք ձեզ մեր լուսանկարները, «Դի Տրոմմել» («թմբուկ») ամսագիրը յեվ համեստ մի դրոշակ՝ Լայպցիգ քաղաքի արևելյան խմբի անունից։ Մեր թերթում դուք չեք կարող գտնել այնպիսի անկյուններ, վոր կան ձեր թերթում, ինչպես օրինակ «պատանի գյուղատնտես» յեվ այլն։ Մեր ամբողջ աշխատանքը հիմնված ե կապիտալիստական հասարակության դեմ պայքարելու վրա։ Մենք դեռ ժամանակ չունենք մտածելու նոր հասարակարգի կառուցման մասին։ Ամենից առաջ գերմանական բանվորները յեվ մենք, նրանց յերեխաները, պետք ե անենք այն, ինչ արեցին ձեր հայրերը 10 տարի առաջ. մենք պետք ե պրոլետարական հեղափոխություն կատարենք։ Ձեզ այդ գործում անհրաժեշտ ե մեր օգնությունը։ Դուք պետք ե սովորեք, մասնակցեք ձեր յերկրի սոցիալիզմի կառուցման մեծ գործին, վորպեսզի մենք կարողանանք ասել բանվորների յերեխաներին. «Տեսեք ԽՍՀՄ— այնտեղ կառուցվում ե սոցիալիզմը, յեկեք մեր շարքերը, վորպեսզի Գերմանիայում ել հաղթանակի մեր սոցիալիզմը»։**

**Լայպցիգ — Գերմանիա**

# ՉԻՆԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

*Այս հոդվածը գրել է հայտնի կոմունիստ ընկեր Բորոդինը։ Նա յերկար ժամանակ ապրել և աշխատել է Չինաստանում։ Նա, մինչև հակահեղափոխության տիրապետությունը Չինաստանում, յեղել է ազգային-հեղափոխական կառավարության և Գոմինդան կուսակցության խորհրդականը։ Ընկեր Բորոդինը մոտիկից ուսումնասիրել է մեր չին յեղբայրների՝ Չինաստանի պիոներական կազմակերպության կյանքն ու աշխատանքը։ Այնպես որ շատ հետաքրքիր է կարդալ այս հոդվածը։*

Յերբ Չինաստանում հեղափոխությանն ստիպեցին ընդհատակ (պոդպոլիա) անցնել, մի քանի ամիս հետո պոդպոլյա անցան նաև 48 հազար պիոներները։

Ուխանի հակահեղափոխականները սկսեցին հալածել պիոներներին, խլեցին նրանցից նշանները, զրկեցին նրանց ազատ հեղափոխական աշխատանք տանելու հնարավորությունից։ Նրանց արգելված էր հագնել պիոներական փորման՝ այդ մասին առանց հատուկ թույլտվություն ունենալու։ Ուրիշ խոսքով՝ պիոներությունն արգելվեց։ Այն ժամանակ նրանք անցան պոդպոլյա, որովհետև պիոներները, որոնք դաստիարակվել ու կազմակերպվել են հեղափոխական ոգով, չէին կարող խոնարհ կերպով վերադառնալ պահպանողական չինական ընտանիքի գիրկը։

Բոլորը, որոնք ճանաչում են պիոներներին, ընդունում են, որ նրանք հանդիսանում են Չինաստանի ամենահուսատու հեղափոխական տարրը։ Մի տարին բավական էր, որպեսզի նրանք ընդմիշտ դուրս գային հին ավանդություններով դաստիարակված չինական յերեխաների միջից։ Նրանք սովորեցին նոր վերաբերմունք ունենալ դեպի իրենց կյանքը և հայրենիքը։ Նրանք ձեռք են բերել հեղափոխական և նույնիսկ դասակարգային գիտակցություն։ Նրանք սովորել են կազմակերպվածության, դիսցիպլինայի և կոլեկտիվ գործողությունների։ Նրանց մեջ արթնացավ բուռն հետաքրքրություն դեպի յերկրում կատարվող դեպքերը, նրանք զգացել են մասսաների իշխանության հրապույրը։



ԸՆԿ. ԲՈՐՈԴԻՆ

Նրանք, որոնք մոտիկից ծանոթ են պիոներական կազմակերպության՝ նրա ազատ գործունեության շրջանում, գիտեն, որ 48 հազար պատանիների հեղափոխական ոգին չի կարող ճնշել և ոչ մի հակահեղափոխություն։

Նրանք շատ լավ կատարում էին իրենց գործը։ Մայիսի մեկին (1927 թ.) Ուխանում կայացավ հսկայական բանվորական միտինգ, որին 200 հազարից ավելի մարդ էր մասնակցում։ Ահագին դաշտը լի էր ժողովուրդով։ Ամբողջ դաշտում յերևում են պատգամավորությունների կարմիր ու յերկնագույն դրոշակները, որոնց տեղավորում էին իրենց տեղերում 16 հազար պիոներները։ Այդ օրը պիոներներն իրենց վրա էին վերցրել միտինգի պարտականությունները, միայն նրանք էին պատասխանում կարգն այդ հսկայական միտինգում։ Բայց այդ չէ միայն։ Պիոներներին կարելի էր տեսնել ամենուրեք։ Մի տեղ դուք կը տեսնեիք պիոներին, որն ուղեկցում է մեկին, մեկ ուրիշ տեղ ցրում է թռուցիկներ, ճառ է արտասանում և այլն։ Մայիսմեկյան տոնը պիոներական կազմակերպությունների փորձի, նրանց հրաշալի կարգապահության ու դաստիարակության ցուցադրություն էր։

Չինական պիոներների ֆիզիքական պատրաստությունը կայանում էր զինվորական ուսուցման և կոլեկտիվ սպորտի մեջ։ Իսկ քաղաքական դաստիարակությունը տանում էին խմբակային զրույցների ու դասախոսությունների միջոցով։

Պիոներներից շատերը դարձել են հրաշալի պրոպագանդիստներ, գեղեցիկ պատանի հռետորներ, որոնք մեծ հաջողությամբ յելույթներ են ունեցել ահագին մասսաների առաջ։

Նրանց շատ անգամ օգտագործում էին՝ բանվորական և գյուղացիական ժողովներում յելույթներ ունենալու և ագիտացիոն գրականություն տարածելու համար։ Պիոներները մասնակցել են այն բոլոր աշխատանքներին, որոնք ուղղված են բարելավելու չին ժողովրդի կյանքի ու կենցաղի պայ-

մանները, նրանք մասնակցել են նույնիսկ աղջիկների վանքերն այլանդակելու դեմ ուղղված կամպանիային։

Պիոներները եղել և մնացել են դասակարգայնորեն գիտակից։ Նրանք գլխավորապես դուրս են եկել բանվորական և գյուղացիական ընտանիքներից, կամ աշակերտներ են, որոնց մեջ ուժեղ է հեղափոխական տրամադրությունը։ Նրանք ակտիվ կերպով պրոպագանդա են մղել չերեխաների բանվորական օրը կրճատելու համար։

Պիոներները Հանկոույում վաղ առավոտյան ցույցեր էին կազմակերպում դեպի գործարանները, որտեղ նրանցից շատերն աշխատում էին. ցուցարարների դրոշների վրա գրված էր լինում. «մենք պահանջում ենք, որպեսզի մեզ համար բանվորական օրը կարճ լինի, մեզ բավական է ութ ժամ։»
Մասամբ պիոներների ագիտացիայի պատճառով ընդունվեց անչափահասների բանվորական օրը կրճատելու օրենքը, սակայն չգործադրվեց կյանքում, որովհետև հակահեղափոխությունն անցավ իշխանության գլուխ։ Բայց կարելի չէ համոզված կերպով ասել, որ հակահեղափոխությանը չի հաջողվի յերկար ժամանակ լռեցնել պիոներներին. Նրանք արդեն գիտեն, որ կարելի յե ինչ որ բան անել՝ անտանելի յերկար բանվորական օրից ազատվելու համար մասսաների մեջ ագիտացիա և պրոպագանդա մղել։ 48 հազար պիոներնե ը (որոնք մեծ մասամբ անչափահաս բանվորներ են) գիտակցել են այն անարդարությունները, որոնցից իրենք տառապում են։ Նրանք սեփական դառն փորձից իմանում են, թե ինչ բան է 12-14 ժամյա բանվորական օրը և նրանք գիտեն, որ կազմակերպության լավ մասսայական բողոքների միջոցով կարելի է հեղափոխականացնել այն կարգերը, որը նրանց դատապարտել է այդպիսի աշխատանքի։

Այդ հեղափոխականորեն գիտակից պիոներների մեջ անհաղթահարելի հեղափոխական ուժ կա։

Կարգապահությունը, որին նրանք սովորել են անցյալ տարի, հակահեղափոխության ներկա շրջանում լավ ծառայություն կը մատուցի. Նրանք սովորել են գործել խիստ կանոններով սահմանված շրջանակների մեջ.— բացարձակ կերպով յենթարկվել կոմանդիրներին, համագործակցել ընկերների հետ, կանոնավոր կերպով սովորել զինվորական գործը, կանոնավոր կերպով հաճախել պարապմունքներին, չծխել, չխմել, չհայհոյել։ Նրանք յորդորվել են պայքարել բանվոր դասակարգի շահերի համար, պայքարել չինական նախապաշարմունքների դեմ, որոնք այդքան մարդկանց ստրկության մեջ են պահում, լավ ամեն կերպ օժանդակել հեղափոխական շարժմանը։

Բանվորական և գյուղացիական կազմակերպություններից բացի, պիոներներին օժանդակում են նաև ուսանողները։ Օր. Հուբեյ նահանգի ուսանողական միության յերրորդ կոնֆերենցիայում, որը կայացավ Ուչանում, մայիսի 3-ից 12-ը, ընդունված է 20 բանաձև պիոներներին օգնելու մասին։ Այդ բանաձևերը հավատեն հայտանել, որ պիոներական կազմակերպությունները կը կատարեն իրենց պարտականությունը՝ բարելավել չին անչափահասների դրությունը և օգնել հեղափոխությանը։ Իրենց բանաձևերի մեջ առաջարկել են ուժեղացնել պիոներների քաղաքական դաստիարակությունը, պատրաստել պիոներներից բանվորության և գյուղացիության մեջ աշխատանք տանելու համար պրոպագանդիստների նորանոր ջոկատներ։ Առաջարկվում էր, որ այդ ջոկատներն ամառային արձակուրդների ժամանակ ուղարկվեն գյուղերն աշխատանք տանելու համար։ Այս բոլորը գործադրվում էր կյանքում, յերբ վրա հասավ հակահեղափոխությունը։

Պիոներների դեմ ուղղված գործողություններն սկսվեցին դեռ մայիսի 21-ին, յերբ Ուխանում հայտարարություն փակցվեց պիոներների դեմ ուղղված միջոցնե-



Սին-Յու-Լին՝ պատանի հրամանատար Չին. Կարմիր Բանակում



Չին պիոները խոսում է զինվորների հետ հեղափոխության նպատակների մասին

րի մասին։ Այդ հայտարարությունը պահանջում էր, վոր պիոներները հանձնեն իրենց նիգակները և այլն։ Յեթե պիոներական կոլեկտիվներից վորևէ մեկը հրաժարվում էր կատարել այդ հրամանը, նրան սպառնում էր ցրումը և ակումբի գրավումը։ Բացի դրանից, անչափահասներին թույլ չէր տրրվում աշխատանքը թողնել և մասնակցել քաղաքական պարապմունքներին և կուսակցական կազմակերպությունների աշխատանքին։

Սակայն պիոներական կազմակերպությունների վերջնական ցրումը յեղավ հուլիսին, յերբ ավելի խիստ միջոցներ գործադրեցին պիոներների նկատմամբ։

Բայց պիոներները շարունակում են իրենց հեղափոխական աշխատանքը։ Ընդհատակյա աշխատանքի պայմաններում նրանք կազմակերպում, համախմբում են իրենց շարքերը՝ գալիք մեծ մարտի ու երթին պատրաստ լինելու համար։

## ՖԻՆԼԱՆԴԻԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՎՈՂՋՈՒՅՆԸ

Ֆինլանդիայից, վորտեղ 9 տարի առաջ սպիտակ բանակները դաժանությամբ արյան մեջ խեղդեցին խորհրդային իշխանությունը, այն յերկրից, ուր մինչև 30,000 բանվորներ են սպանված, վորտեղ 10,000 հեղափոխականներ բանտերն են նետված, վորտեղ արգելված է պիոներական կազմակերպությունը — մենք ստանում ենք ջերմ յեղբայրական նամակ.

«Մենք կարդացել ենք լրագրներում յեվ իմացել մեր ծնողներից, վոր խորհուրդների յերկրում պետությունն օգնում է պատանեկական շարժմանը։ Հոկտեմբերի մեծ տոնին մենք ուղարկում ենք ձեզ մեր ջերմագին վողջույնն այն ցանկությամբ, վոր բանվոր դասակարգի ուժն էլ ավելի աճի, լայնանա։ Ցանկանում ենք, վոր հետագայում ամբողջ աշխարհի պրոլետարիատը հաղթանակեր յեվ կառուցեր սոցիալիզմը»։

Հելսինգֆորսի պիոներներ

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ ՓՈՔՐԵՐԻ ՀԱՄԱՐ

*ՄԱՆԱՍԻԵՎԱ*—**1**) **Տոլակի շապիկը, 2) Ջեյրանի հիվանդությունը, 3) Ինչ լավ օգնեցին, 4) Նանի բանը,**
**Փոխադրեց Սիմակ — Պետհրատ — 1927 թ.**

Այս փոքրիկ պատմվածքները կարող են ընթերցանության հետաքրքիր նյութ ծառայել 7-8 և ավելի ցածր հասակի յերեխաների համար։ Հեղինակը կարողացել է իր պատմվածքների մեջ տալ մի շարք գաղափարներ, — սեր դեպի կենդանիները, նրանց հիվանդության դեպքում անասնաբույժին դիմելու անհրաժեշտությունը և այլն։ Հանձնարարում ենք պիոներներին ձեռք բերել այս պատմվածքները և կարդալ իրենց փոքր քույրերի, յեղբայրների և հոկտեմբերիկների համար։ Գրքույկները տպված են խոշոր տառերով և գունավոր նկարներով։ Յուրաքանչյուրի գինը 20 կոպեկ է։ Թանկ չէ։

## Դ Ե Ս Ի Ց - Դ Ե Ն Ի Ց



### ՊԱՏԿՈՐ ՆԿԱՐԻՉՅԱՆԻ ՆԿԱՐԸ

Պատկոր Նկարիչյանը, վորն իրեն «տաղանդավոր նկարիչ» է համարում, մի նկար էր ուղարկել «Պիոներին»՝ շապկի վրա տպագրելու համար։ Սակայն խմբագրությունը, մի շարք պատճառներով, անհարմար գտավ այն տպագրել։ Այստեղ տալիս ենք պատկոր Նկարիչյանի նկարը փոքրացած գիրքով։ Թող «Պիոների» բոլոր ընթերցողներն ուշադրությամբ նայեն նկարին և իմանան այն պատճառները, վորոնց շնորհիվ այդ նկարը չտպագրվեց շապկի առաջին յերեսի վրա։ Այն ընթերցողները, վորոնք կգտնեն այդ պատճառները և կհաղորդեն խմբագրությանը, նրանց ազգանունները կտպագրվեն «Պիոներում»։



Կտրել և առանձին մասերն այնպես միացնել, վոր ստացվի Համամիութենական Կոմունիստական Կուսակցության յերեք առաջնորդների նկարները։



## ԻՄԱՑԻՐ ԹԵ ՔԱՆԻՍՆ ԵՆ

Շատ անգամ նախասենյակ մանելով, սենյակից խոսակցության ձայներ ես լսում: Յերբեմն խոսում են մի քանի մարդ միասին: Ձնկնելով խոսակցության մանրամասնությունների մեջ, հետաքրքիր է վորոշել, թե քանի՞ մարդ են խոսում և ովքեր են խոսում:

Յեվ ահա այդպիսի մի խաղ կարելի յե սարքել:

Պիոներներից մեկը մնում է սենյակում, իսկ ողակի մյուս պիոներները դուրս են գնում, ծածկելով իրենց յետևից դուռը:

Ողակավարի կամ պիոներներից մեկի ցուցմունքով, պիոներները միաժամանակ սկսում են խոսել, խոսում են մեկ րոպե: Խոսակցությունը վերջացնելով, ղեկավարը հարց է տալիս սենյակում մնացած պիոներին — «քանի՞ հոգի եյին խոսում և ո՞վքեր եյին խոսում»: Ճիշտ պատասխանողը հետևյալ խաղին դառնում է խաղի ղեկավար: Յեթե նա չի կարողանում պատասխանել, խոսակցությունը լսում է յերկրորդ անգամ:

Այս խաղը զարգացնում է պիոներների լսողությունը, սովորեցնում է արագությամբ վորոշել ձայները:

Այս խաղը կարելի յե բարդացնել ձայների թիվը ավելացնելով և կեղծելով: Սակայն, խաղն սկսելիս, պետք խոսեն յերեք չորս հոգի և սովորական ձայնով:

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ՊԱՀԱԿՈՒԹՅՈՒՆ

Գիշեր է: Պահակը պահպանում է «դաշտային հեռախոսը»: Թշնամիներն աշխատում են խլել «հեռախոսը»: Ո՞վ հաղթանակով դուրս կգա:

Աթոռի վրա նստած է «պահակը»: Նրա աչքերը կապած են: Թևերը վար է իջեցրած իրանին զուգահեռ, ծնկների վրա գտնվում է «հեռախոսը» (փոքրիկ մի արկղ, կամ թաշկինակ): Ողակը դասավորվում է պահակի շուրջը, խորին լռություն պահպանելով: Խաղացողները հերթով գնում են վորսալու «հեռախոսը»: Յուրաքանչյուրը պետք աշխատի աննշմուկ մոտենալ նրան, զգուշությամբ խլել «հեռախոսը» և յերեք քայլ յետ գնալ: Այդ բոլորը՝ պետք այնպես անել, վոր «պահակը» չիմանա, չլսի: Պահակը, յերբ կասկածում է, վոր իրեն վտանգ է սպառնում, իրավունք ունի բռնել «հեռախոսը» փախցնելու նպատակով դեպի իրեն յերկարած ձեռքը: Յեթե նույնիսկ «հեռախոսը» փախցնողներից վորևե մեկը ամենաթեթև կերպով դիպչի պահակի ձեռքին նա խաղից դուրս է մնում:

Յեթե «պահակը» հարձակվող 10 հոգուց 3-ին կարողացավ բռնել, հաղթանակը նրան է մնում:

Խորը լռություն, զգուշություն և ճարպկություն է հարկավոր, խաղը լավ անցկացնելու համար:

## «ԴԺՈԽԱՅԻՆ ՄԵՔԵՆԱ»

Խաղը կայանում է նրանում, վոր փնտրում են մի փոքր իր, վորն իրենից ներկայացնում է պայթելու պատրաստ «դժոխային մեքենա»:

Խաղի ղեկավարը ցույց է տալիս այն իրը, վորը լինելու յե «դժոխային մեքենան», վորից հետո խաղացողները թողնում են սենյակը: Ղեկավարը «դժոխային մեքենան» թաքցնում է սենյակի վորևե անկյունում: Սկսում են փնտրել: Բոլոր խաղացողները բաժանված են լինում յերկու խմբի՝ կարմիրների և սպիտակների: Ինչ քան շուտ գտան մեքենան, այնքան լավ: Յաղթող դուրս կգա այն խումբը, վորի անդամն առաջինը կգտնի «դժոխային մեքենան»: Յեթե վորոշված ժամանակի ընթացքում (2-4 րոպե) խաղացողները չեն կարողանում գտնել «մեքենան», նրան համարում են պայթած և խաղացողներին էլ սպանված:

# ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



ԽՆԿՈ-ԱՊԵՐ

## ՅԵՐԿԱԹՈՒՂԻ

Համո, Կամո, Լենիկ, Արեգ,
դուք նստարան, աթոռ բերեք.
դեհ, շուտ, շուտ...
հասիր, Աշոտ։
— Ծխնելույզն ու՞ր է,
— ծխնելույզն ու՞ր է...
— Տղերք, դուք
կանգնեցեք զույգ-զույգ.
— Այ, բերի, բերի
ծխնելույզը ինքնայեռի,
թուղթ կպցնեք վրան—
լինի ծխի նման։
Վեց աթոռ՝ անիվ,
գնացքը լրիվ.
բոլոր ես, Միկիչ.
կանգնիր դու մեջ տեղ՝
ու դարձի սուլիչ.
դու սուլի, սուլի, սուլի։

## ԳԱԶԱՆԱՆՈՑ



Արմիկին նվիրել էին մի գազանանոց. լարերից շինած վանդակներ էին. մեջը գազաններ — փիղ, գայլ, արջ, աղվես, առյուծ ու վագր։

Արմիկը հպարտանում էր ու փայտը ձեռին շրջում վանդակների մոտ, բարկանում, հրամայում, կանչում էր գազաններին



Հավաքվեցին թաղի յերեխաները՝ դիտելու Արմիկի գազաններին։

— Զգույշ, կկծեն, — ասում էր Արմիկը. ու սկսեց մեկ-մեկ ցույց տալ.

Սա փիղ է, ապրում է հարյուր տարի, օրական 20 դույլ ջուր է խմում...

— Սա արջ է, սպիտակ արջ, ապրում է սառույցների մեջ, լավ լողում է, ձուկ շատ է սիրում։

— Աղվեսին բոլորդ էլ գիտեք. հավի ու ճուտի գողը, շատ խորամանկն է անպիտանը։

Վայ, - գոռաց հանկարծ գազաններին պապողը...

Ընկերները խառնվեցին իրար, աղմուկ, աղաղակ, իրարանցում։

Արմիկն իրիկունը մի կտոր միս էր դրել գայլի վանդակը. մկնիկը հոտն առել, յեկել — կրծում էր։

Արմիկը յետ քաշվեց, մկնիկը փախավ, իսկ յերեխաներն սկսեցին հռհռալ...

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1900—1905 թվականներին մեր «Կայծեր» խմբակը՝ մի խումբ ռուսական դպրոցի աշակերտներ՝ հավաքույթներ էյինք ունենում, ներկայացումներ կազմակերպում, գրականություն տարածում.

Ունեյինք նաև մեր շաբաթաթերթը՝ «Կայծեր»-ը, վորտեղ ընկ. Մարտին Սահակյանը մեծ մասամբ վոտանավորներ էր գրում, Արամ Ոհանջանյանը՝ գյուղական կյանքից դիպվածներ, յես էլ՝ առաջնորդողներն ու «պատմափիլիսոփայական» հոդվածներ։

Մեր հակառակորդները՝ մեծ մասամբ «Աշակերտական միության» (դաշնակցական) անդամները՝ ծաղրում եյին մեզ՝ ասելով, վոր վերջը «կայծերը» դառնալու յեն «այծեր», հետո էլ թերևս՝ «ծեր»։

1903 թ. մենք էլ ընկանք կասկածելիների շարքը և մի օր ժանդարմների*) մի խմբակ գիշերը խուզարկեց մեր տունը, ձերբակալեցին յեղբորս, տարան գրքեր, թղթեր, նաև «Կայծերի» մի քանի №-ներ։

Յերկու օր անց վոստիկանը յեկավ և տարավ ինձ պրիստավի մոտ, այնտեղից էլ վոստիկանատուն, մինչև վոր գործս քննվի և բանտ ուղարկեն։

Մի մութ սենյակ էր, լիքը վոստիկաններով, հարբած մարդկանցով, անգործներով. կանայք էլ կային. կոշկլիներկի հոտն ու փոշին անտանելի յեր։

Ինձ ցույց տվին մի նստարան, վորի վրա պետք է քնեյի։

Դես դեն նայելուց հետո յես մի հարմար բույն գտա ու ծլկվեցի տուն։ Մի ժամ չանցած յես վերադարձա՝ մի բարձ ու վերարկուս հետս. վոչ վոք չնկատեց իմ բացակայությունը։

Մյուս օրն ինձ հարցաքննության կանչեց ժանդարմների պետի ոգնականը. յես չուզեցի անվանել իմ ընկերներին և ասացի, վոր ինքս եմ գրել «Կայծերը»։ Իմ ուշադրությունը գրավեցին սեղանի վրայի պղնձե մոմակալները, վորոնք գրնդակներ եյին ուռուցիկ փշանման անցքերով, դրանք խլած ռումբերի պատյաններ եյին, վոր հարմարեցրել եյին մոմակալի։

Հարցաքննության ժամանակ յես նկատեցի, վոր ուզում են լուսանկարել ինձ. առաջին անգամ յես փռշտացի. պետի ոգնականը խնդրեց հանգիստ կանգնել. նորից ուզեցին նկարել, յես կռացա թաշկինակս վերցնելու. ոգնականը հրամայեց դադարեցնել։

Հարցաքննությունից հետո ինձ բանտ տարան։

Բանտում մնացի մի ամսից ավելի. մեր «կամերան» ընդհանուր էր, մի մեծ սենյակ, վորտեղ կային 35 բանտարկյալներ, մեծ մասամբ մաքսանենգներ (կոնտրաբանդիստ), թուրքեր ու քրդեր, վորոնք կամ «նամազ» (աղոթք) եյին անում, կամ «սուրբ» գրքերից եյին յերգում և կամ խմորից նվերներ եյին պատրաստում իրենց հարազատների ու ծանոթների համար։

Դժվար էր ապրել այդ տգետ ու կրոնամոլ մասսայի մեջ։ Աղոթքի ժամանակ յես իրավունք չունեյի յերգել կամ ծիծաղել. յես բարեկամացա յերիտասարդ Ահմեդի հետ, վորն ինձ սկսեց թուրքերեն սովորեցնել՝ Ղուրանի վրա. ինարկե վոչինչ չսովորեցի, ինչպես և Ահմեդը չեր կարողանում հասկանալ Պուշկինին, վոր յես կարդում եյի ռուսերեն ու թարգմանում խառն՝ թուրքերեն—հայերեն լեզվով։ Սկսեցի ոգտվել բանտի խղճուկ գրադարանից, վորտեղ միաժամանակ փորձում եյի գրել, թարգմանել. Պուշկինի «Բանտարկյալ» վոտանավորներից մի հատված փորագրել եյի մեր կամերայի պատին։ Սոսկալի կեղտն ու աղմուկն ինձ հուսահատեցնում եյին. սկսեցի ըմբոստանալ, բայց վերջն ընկա հայտնի կարցերը (մութ սենյակ). վերջապես կարգադրություն ստացվեց ինձնից ստորագրություն վերցնել և արձակել։

Մ. Դ.

*) Ցարական կառավարության հետախույզ գործակալներ։

# ԽԵԼԱՑԻ ԺԱՄԱՆՑ ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԵՐԻՆ




Ռեբուս 9.




Ռեբուս 10.

## ԽՆԴԻՐ №№ 5, 6, 7.

1. Գերանի յերկարությունը 5 մետր է. մի րոպեյում կարելի յե կտրել մի տեղից։ Քանի՞ րոպեյում գերանը կարելի յե սղոցել մետրանոց կտորների։

2. Ի՞նչ թիվ կարելի յե շուռ տալ առանց փոփոխելու։

3. Ինչպե՞ս կարելի յե 20-ից հանել 88 և ստանալ 22 մնացորդ։

## ԹՎԱՏԱԽՏԱԿԸ

Նկ. 1-ը ցույց է տալիս, թե ինչպես կարելի յե ժամացույցի



թվատախտակը բաժանել յերեք մասի, վորոնց թվերի գումարները միանման են.

Մի մասում մենք ունենք՝

XI+XII+I+II=26

Յերկրորդում՝

IX+X+III+IV=26

Յերրորդում՝

V+VI+VII+VIII=26

Խնդիրը կայանում է հետևյալում.— Թվատախտակը բաժանել չորս այնպիսի մասերի, վորոնց թվերի գումարները դարձյալ միատեսակ լինեն։

## ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԱՍՏՂ

Նկարում նկարված վեց անկյունանի թվական աստղն ունի հետևյալ «մագնիսական հատկությունը». բոլոր վեց շարքերի թվերն ունեն միևնույն գումարը։

4+6+7+9
4+8+12+2 } 26
9+5+10+2

11+6+8+1
11+7+5+3 } 26
1+12+10+3

Բայց աստղի ծայրերին տեղավորված թվերի գումարն այլ է.

4+11+9+3+2+1=30

Չե՞ք կարող արդյոք այնպես անել, վոր աստղն ավելի «կատարելագործվի», վորպեսզի վոչ



միայն ուղիղ շարքերի թվերի գումարը լինի 26, այլև աստղի ծայրերի վեց թվերի գումարը նույնպես լինի 26։

## ԿԱՏԱԿ-ԽՆԴԻՐՆԵՐ

1. Ինչո՞վ է սկսվում նամակ գրելը։

2. 2 մայր, 2 աղջիկ, 2 տատ 2 թոռ. ընդամենը քանի՞սն են։

3. Զամբյուղի մեջին կա 7 խնձոր. տվեք 7 հոգու այնպես, վոր ամեն մեկն ստանա մի խնձոր, իսկ մի խնձորը մնա զամբյուղում։

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՇԱՐՔԱՅԻՆ ՎԱՐԺՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆՈՐ ՀՐԱՀԱՆԳՆԵՐԸ

*Պիոներների կենտրոնական բյուրոյի վորոշման համաձայն մասամբ փոփոխության են յենթարկվում շարքային վարժությունների հրահանգները. մտցվում են հրահանգի նոր ձևեր։ Այստեղ բերում ենք հրահանգների նոր ձևերը և հրահանգների հին ձևերից նրանք, վորոնք փոփոխության են յենթարկվում։*

| ՆՈՐ ՀՐԱՀԱՆԳԸ | ՆԱԽԿԻՆ ՀՐԱՀԱՆԳԸ |
|---|---|
| **ԿԵՑՎԱԾՔ** | |
| 1. Զգաստ | |
| 2. Ազատ | Հանգիստ |
| 3. Ուշադրություն | |
| 4. Աջ հավասար | Աջից ուղղություն առ |
| 5. Ձախ հավասար | Ձախից ուղղություն առ |
| **ԴԱՐՁՈՒՄՆԵՐ** | |
| 1. Աջ—դարձ | |
| 2 Ձախ—դարձ | |
| 3. Կես աջ—դարձ | |
| 4. Կես ձախ—դարձ | |
| 5. Հետ—դարձ | |
| 6. Դեպի աջ մարշ | Ձախ թևն առաջ—մարշ |
| 7. Դեպի ձախ մարշ | Աջ թևը առաջ—մարշ |

**ՇԱՐՔԻ ՎԱՐԺՈՒԹՅՈՒՆՆԵՐ**

| | |
|---|---|
| 1. Շարվիր | |
| 2. 1-ին 2-րդ համրիր | Մեկից յերկու թիվ տուր |
| 3. Կարգով համրիր | Մեկից վերջ թիվ տուր |
| 4. Զույգաշար կազմիր | Յերկու շարք կազմիր |
| 5. Մի շարք կազմիր | |
| 6. Քառաշար կազմիր | Չորս շարք կազմիր |
| 7. Յերեք շարք կազմիր | |
| 8. Շարք, աջ—բացվիր | |
| 9. Կենտրոնից բացվիր | |
| 10. Ձախ, աջ, դեպի կենտրոն փակվիր | |
| 11. Քայլով, մարշ | Քայլ առաջ, մարշ |
| 12. Վազով. մարշ | Վազք առաջ, մարշ |
| 13. Կանգ առ | |
| 14. Տեղում | |
| 15. Հավասարումն աջ | (Քայլելու ժամանակ) |
| 16. Հավասարումն ձախ | (Քայլելու ժամանակ) |
| 17. Ուղղություն աջ պատվի առ | (Յերթի ժամանակ) |
| 18. Ուղղություն ձախ, պատվի առ | (Յերթի ժամանակ) |

**Ծանոթ.** Քայլելու ժամանակ „դարձումները" կատարվում են նախկին ձևով, այսինքն կանգ են առնում, ապա նոր դառնում։

Զույգշար կազմելիս „յերկրորդ" համարներն աջ վոտքը տանում են անմիջապես առաջին համարի յետևը և ձախը միացնում։




**Խմբագրական կոլլեգիա՝** Աղնավուրյան Շ., Դավթյան Ս., Հարությունյան Պ., Միրզայան Հ., Մուշեղյան Տ., Վարդապետյան Վ.

**Պատասխանատու խմբագիր՝ Շ. ԱՂՆԱՎՈՒՐՅԱՆ**

Գրառեպվար № 509 բ   Տիրաժ 1200   Պետհրատի 2-րդ տպարան Յերևանում պ. 1547

ԳԻՆՆ Է 25 ԿՈՊ.

## ԲԱՑՎԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ 1928 ԹՎԻ ՀԱՄԱՐ

# ՊԻՈՆԵՐ

### ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

### ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏ. ԲՅՈՒՐՈՅԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

**«ՊԻՈՆԵՐ»-Ը** *Տպագրում է հայ յեվ այլազգի ժամանակակից լավագույն գրողների պատմվածքները, բանաստեղծությունները։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ը** *Տպագրում է հնարավոր նկարազարդ հոդվածներ ԽՍՀՄ-ում յեվ արտասահմանում կատարվող կարեվոր քաղաքական դեպքերի մասին։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ն** *Իր եջերում լայն չափով պարզաբանում է կարմիր գծից այն կողմն աշխատող ու պայքարող ընկերների՝ արտասահմանի պիոներական կազմակերպությունների կյանքն ու աշխատանքը։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ը** *Տպագրում է բնագիտության յեվ տեխնիկային վերաբերող հնարավոր հոդվածներ։ Ունենալու յե գիտական յեվ տեխնիկական նորությունների բաժին։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ը** *Միշտ ունենալու յե պիոներական գիտելիքների յեվ տեխնիկական ունակությունների հատուկ բաժին։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ը** *Մեծ տեղ է տալու պիոներների, 1-ին աստիճանի յեվ յոթնամյա դպրոցների աշակերտների ինքնուրույն ստեղծագործություններին՝ պատմվածքներին, բանաստեղծություններին յեվ այլն։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ը** *4—5 յերես հատկացնելու յե պատանի կորեսպոնդենտների (պատկորների) թղթակցություններին։ Տպագրելու յե պիոներական յեվ աշակերտական կյանքից վերցրված լուսանկարներ։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ն** *Ունի խելացի ժամանցի կազմակերպման յեվ խաղերի բաժին։ Տպագրվում են հնարավոր ռեբուսներ, խնդիրներ, բառախաղեր, անեկդոտային յեվ ժամանցային խաղեր, մարզանքներ, յերգեր յեվ այլն։*

**«ՊԻՈՆԵՐ»-Ի** *Շապիկը լինելու յե նկարազարդ յեվ գունավոր (2—3 գույն)։*

### ԱՅՍ ՏԱՐԻ «ՊԻՈՆԵՐ»-Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԻՋԵՑՎԱԾ Է

**Բ Ա Ժ Ա Ն Ո Ր Դ Ա Գ Ր Ո Ւ Թ Յ Ա Ն   Պ Ա Յ Մ Ա Ն Ն Ե Ր Ը**

*1 ամիսը—15 կոպ.*
*3 » —40 »*
*6 » —80 »*
*12 » 1 ռ.50 »*

**Առանձին համարն արժե 20 կոպ.**

*Բաժանորդագինն ուղարկել հետևյալ հասցեով — Յերևան, Լուսժողկոմատ — «Ժող. Լուս.»-ի Էքսպեդիցիային («Պիոներ» հանդեսի համար)։*

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՍՑԵՆ՝ *Յերևան, Ռուբենի փող. № 2*

**Ծանոթություն**—*Նրանք, վորոնք այս տարի «Պիոներ»-ին բաժանորդագրվել են հին պայմաններով, նրանց կուղարկվի ավել օրինակներ։*